

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



**ԱՆԱՀԻՏ ՆԱՆՅԱՆԸ** սովորում է Երևանի Վ. Վաղարշյանի անվան № 80 միջնակարգ դպրոցի 7-րդ դասարանում: Հատկապես սիրում է մայրենի լեզուն և գրականությունը: Դպրոցում և մասսայական գրադարանում կազմակերպվող գրական հանդեսների ակտիվ մասնակիցներից է: Հաճախում է նաև Երևանի Ղ. Ղուկասյանի անվան պիոներների և դպրոցականների պալատի գրական խմբակը:

*Վ. ՍԱՐԳՍՅԱՆ*
*հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի*

## Մայրիկիս

**Այսօր տոն է, լույս ու բերկրանք,**
**Այսօր գարուն է, խնդում,**
**Երջանկություն, արև է տաք**
**Մայրիկիս և իմ սրտում:**

**Թող արևը պայծառ ժպտա,**
**Թող երկինքը չամպոտի,**
**Թող մայրիկս հեզ ու բարի՝**
**Երջանկության մեջ ապրի:**





## Փոքրիկ ծիլը

**Անտես մեկը գաղտնի կարծես՝**
**Փոքրիկ ծիլին համբուրեց.**
**— Վա՜յ, այս ո՞վ էր, ո՞վ էր այսպես,**
**Ինձ համբուրեց մեղմ ու հեզ:**

**— Ես եմ՝ ցողը տաք անձրևի,**
**Եկա քեզ հյուր սարերից,**
**Իմ մայրիկը ինձ ուղարկեց,**
**Որ զովացնեմ քեզ մի քիչ:**

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

1981 ● ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԻՐՆԵՐԸ ● 1981

# Դեղձենիները

Դեղձենիները ժպտում են քնքուշ,
Լուսե մի շղարշ՝ իրենց ուսերին,
Նրանց ժպիտը մեղմիկ ու անուշ
Արձագանքում է գարնան լույսերին:

Իմ հայրենիքի երգն է սոսափում
Դեղձենիների ծաղկած թևերին,
Եվ թիթեռներ են կարծես թե նազում
Նրանց հոգեթով ու նուրբ հյուսքերին:



# Ուսուցչուհի

Դու ծերացել, դու ճերմակել,
Դարձել մի բուռ ձնծաղիկ,
Դու մեր հոգում լույսեր վառել
Ու տվել ես գիտելիք...

Երբ նայում եմ ես քո խոհուն,
Քո իմաստուն աչքերին,
Մորս պես ես դու ժպտում ինձ,
Ուսուցչուհի իմ անգին:







«Պիոներ» ամսագրի 1981 թ. լավագույն գրական ստեղծագործության մրցանակը շնորհվեց արձակագիր ՀՐԱՉՅԱ ՄԱԹԵՎՈՍՅԱՆԻՆ՝ «Կանգառներ ճանապարհին» վավերագրական վիպակի համար:



Նկարիչ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԸ «Մեղուների նման», «Մեր քաջ քուչոն», «Եթե փիսոն...» ստեղծագործությունների և 8-րդ համարի պոեզիայի էջի նկարազարդման համար արժանացել է 1981 թ. լավագույն նկարչական ձևավորման մրցանակին:



## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ և դպրոցական կյանք

**Ինչու՞ ենք սիրում հատկապես այս առարկան և ինչու՞ չենք սիրում մյուսը: Այս հարցին փորձում են պատասխանել մայրաքաղաքի մի շարք դպրոցների մի խումբ աշակերտներ: Որպեսզի նրանք իրենց մտքերն ավելի անկաշկանդ արտահայտեն, նրանց իրավունք վերապահվեց շարադրության տակ չդնելու իրենց անուն-ազգանունները:**

# ԻՆՉՈՒ ԵՄ ՍԻՐՈՒՄ ԱՅՍ ԱՌԱՐԿԱՆ, ԻՍԿ

## ԿԱԽՎԱԾ Է ԴԱՍԱՎԱՆԴՈՒՄԻՑ

Ամենից շատ սիրում եմ հանրահաշիվը և ֆիզկուլտուրան: Ինչու՞ եմ սիրում հանրահաշիվը, չէ՞ որ բարդ առարկա է: Այո՛, բարդ առարկա է, բայց շատ հետաքրքիր, անընդհատ ինչ-որ նոր բանաձևեր ենք սովորում, լուծում նոր խնդիրներ:

Իսկ ինչու՞ եմ սիրում ֆիզկուլտուրան:

Ֆիզկուլտուրան, կարծում եմ, բոլորն են սիրում, որովհետև անկաշկանդ ենք, կարծես թե ազատ ժամ լինի, ու մեզ համար մարզվում ենք, որ լինենք ավելի առողջ:

Իսկ ո՞ր առարկան չեմ սիրում:

Առաջին հերթին օտար լեզուն (անգլերենը): Չեմ սիրում, որովհետև այդ ժամերը անցնում են անհետաքրքիր, բացի դասից ոչ մի հետաքրքիր բան չենք իմանում: Օրինակ, լավ չէ՞ր լինի իմանայինք, թե ինչպես են առաջացել անգլերեն տառերը, կամ ո՞վ է ստեղծել: Ինձ թվում է, հետաքրքիր չի կազմակերպվում այդ առարկայի դասավանդումը: Առարկան կսիրենք, եթե դասավանդումը հետաքրքիր լինի:

Տնարարության դասն էլ է անհետաքրքիր անցնում: Դասից դուրս ոչ մի կողմնակի բան չենք իմանում: Օրինակ, կարելի է գնալ կտորեղենի գործարան, մետաքսաթելի գործարան, հետևել նրանց աշխատանքին և որոշ բաներ ավելի իմանալ: Թե չէ միայն ծրագրով շարժվելը քիչ է, այդ նույն բաները մենք սովորում ենք նաև տանը:

Տնարարության դասասենյակները լավ կահավորված չեն: Ամեն մի աշակերտի համար լավ կլիներ, որ մեկ սեղան, աթոռ և կարի մեքենա լիներ: Չկան նաև գազօջախներ:

Ահա այս պատճառներով էլ աշակերտների մեծ մասին այս կամ այն առարկան սիրելի չէ:

# ՄՅՈՒՍԸ՝ ՈՉ

## ԱՆԿԱՐԵՎՈՐ ԱՌԱՐԿԱ ՉԿԱ

Անկախ նրանից, սիրում ենք տվյալ առարկան թե ոչ, մի բան պարզ է. եթե հանձնարարված է դասը, պետք է սովորես: Յուրաքանչյուր առարկա, ինչպես օրգանիզմի համակարգում յուրաքանչյուր օրգան, ունի իր ֆունկցիան, իր որոշ դերն է խաղում մեր գիտելիքների զարգացման գործում և հետագա կյանքում:

Յուրաքանչյուր մարդ պետք է բազմակողմանի կրթություն ունենա, պետք է որոշ գաղափար ունենա յուրաքանչյուր առարկայից: Իսկ եթե որևէ առարկա չսիրելով՝ աշակերտը չի սովորում, ամենամեծ վնասը հասցնում է իրեն:

Նրանք, ովքեր որոշել են դպրոցի ծրագրի մեջ մտցնել բազմազան առարկաներ, չէ՞ որ խելացի մարդիկ են, լավ չափումն են արել: Նրանք այդ ամենը արել են մեր գիտելիքները հարըստացնելու և մեզ բազմակողմանի կրթված դարձնելու համար: Այնպես որ, յուրաքանչյուր առարկա ունի իր հետաքրքրությունը, դերն ու նշանակությունը: Եվ մենք էլ, սիրենք թե չսիրենք, պետք է աշխատենք լավ սովորել յուրաքանչյուր առարկա:

## ՊԱՏՄԵԼ ՉԵՄ ՍԻՐՈՒՄ

Սիրում եմ հանրահաշիվը, հայոց լեզուն, քիմիան, գրականությունը, ֆիզիկան, կենսաբանությունը և ռուսաց լեզուն:

Այս առարկաները սիրում եմ, որովհետև դրանք ավելի հեշտ եմ յուրացնում, ուստի և հետաքրքիր են թվում ինձ: Չեմ սիրում պատմողական առարկաները, ընդհանրապես պատմել չեմ սիրում: Կան առարկաներ, որոնք չեմ սիրում միայն այն պատճառով, որ ուսուցիչները վատ են բացատրում, չնայած առարկաներն իրենք հետաքրքիր են: Այդպիսի առարկաներից են, օրինակ, պատմությունը և սովետական իրավունքը:






# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՊԻՈՆԵՐԻ ՕՐԵՆՔՆԵՐԸ

Պիոները նվիրված է հայրենիքին, կուսակցությանը, կոմունիզմին։

Պիոները պատրաստվում է դառնալ կոմերիտական։

Պիոները ձգտում է հավասարվել պայքարի և աշխատանքի հերոսներին։

Պիոները հարգում է զոհված մարտիկների հիշատակը և պատրաստվում է դառնալ հայրենիքի պաշտպան։

Պիոները համառ է ուսման, աշխատանքի, սպորտի մեջ։

Պիոները ազնիվ և վստահելի ընկեր է, միշտ խիզախորեն ճշմարտության համար կանգնած։

Պիոները հոկտեմբերիկների ընկերն է և առաջնորդը։

Պիոները պիոներների և բոլոր երկրների աշխատավորների երեխաների բարեկամն է։

Կատարել պիոների օրենքները, նշանակում է միշտ և ամեն ինչում հավատարիմ լինել մեծ Լենինի ավանդներին, ԱԶՆԻՎ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԽՈՍՔԻՆ, բարձր գնահատել պիոներական փողկապը, որպես սրբություն պահպանել և բարձր կրել պիոներական կարմիր դրոշը։

**Կարմիր պիոներական փողկապը** կարմիր դրոշի մասն է։ Փողկապի երեք ծայրերը խորհրդանշում են երեք սերունդների՝ կոմունիստների, կոմերիտականների և պիոներների հեղափոխական միասնությունը։ Այդ մասին են խոսում բոցի երեք լեզուները, որոնք գտնվում են Վ. Ի. Լենինի ստվերանկարի պատկերն ունեցող քո **պիոներական կրծքանշանի** աստղից վեր։ Դու ունես նաև **պիոներական ողջույն։**

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՓՈՂԿԱՊ, ԿՐԾՔԱՆՇԱՆ, ՈՂՋՈՒՅՆ

Գլխից վեր պահած աջ ձեռքի միմյանց սեղմված հինգ մատները խորհրդանշում են, որ հայրենիքի, Լենինի կուսակցության, ամբողջ երկրի աշխատավորների համերաշխության շահերը, իր պիոներական կոլեկտիվի շահերը պատանի լենինյանը անհատականից բարձր է դասում։

Պիոներական ողջույնով պիոներները ողջունում են կարմիր դրոշի, ՍՍՀՄ պետական դրոշի և միութենական հանրապետությունների դրոշների բարձրացումը, պիոներական և ռազմական շարքը, ջոկատավարներին։ Պատանի լենինյանները պիոներական ողջույնի են կանգնում Սովետական Միության և միութենական հանրապետությունների պետական հիմների, կուսակցական «Ինտերնացիոնալ» հիմնի կատարման ժամանակ, ողջույնի են կանգնում Վ Ի. Լենինի դամբարանի մոտ, Լենինի, սովետական երկրի ազատության և անկախության համար մարտնչած մարտիկների հուշարձանների մոտ։

ՍՍՀՄ պիոներները, գտնվելով արտասահմանում, պիոներական ողջույնով դիմավորում են իրենց պիոներ բարեկամներին, մեզ բարեկամ երկրի ազգային դրոշը և նրա պետական հիմնը։

**Պիոներական կոլեկտիվը պատասխանատու է, որ յուրաքանչյուր պատանի լենինյան բարձր դասի կարմիր փողկապը և պիոներական կրծքանշանը, բարեխղճորեն կատարի իր պիոներական պարտականությունները։**

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ

*բանասիրության դոկտոր*

## 47. Ի՞ՆՉ ԲԱՆ Է ՀՆՉԵՐԱՆԳԸ՝ ԻՆՏՈՆԱՑԻԱՆ

Մարդ կա, որ հանդարտ է խոսում, մարդ էլ կա՝ հակառակը: Մեկին ասում են՝ «Ի՞նչ ես ծոր տալիս», մյուսին՝ «Ի՞նչ ես կարկտի պես վրա տալիս»: Արագախոս կամ դանդաղախոս լինելը խառնվածքի բան է, բայց միայն խառնվածքը չէ, որ պայմանավորում է խոսքի տեմպը, այլ նաև հանգամանքները. նույն մարդը հանդիսավոր խոսք տալիս կամ կարեկցանք հայտնելիս այլ տեմպով կխոսի, ոգեշնչվելիս կամ խուճապի մատնվելիս՝ բոլորովին այլ: Խոսքի տեմպը, այսպիսով, կրում է մարդու խառնվածքի և հոգեվիճակի կնիքը:

Տեմպ հասկացությունը մտնում է հնչերանգի մեջ:

Ինչքան էլ արագախոս լինի մարդ, ինչքան էլ հուզված և տրամադիր արագ խոսելու՝ չի կարող առանց դադարների խոսել: Նախ որ ուզի-չուզի պիտի շունչ առնի, իսկ ներշնչելիս անհնար է ձայն հանել: Դա դեռ ստիպողական, մեր կամքից կախում չունեցող, այսպես կոչված, ֆիզիոլոգիական դադարն է: Բայց խոսքի մեջ մենք դադարներ ենք տալիս նաև գիտակցաբար, որ խոսքի տրամաբանությունը չկորչի: Բառերն անջատում ենք միմյանցից, որ չխառնվեն իրար և շիլաշփոթ չդառնան: Չենք ասում՝ «Ինչ ուզում ես ասա ես մնում եմ իմ կարծիքին», այլ՝ «Ինչ ուզում ես ասա՝ ես մնում եմ իմ կարծիքին»: Դադարը կամ պաուզան, այսպիսով, բանավոր խոսքի կազմակերպման մեջ մեծ դեր է կատարում, այն դերը, որ գրավորի մեջ պատկանում է կետադրական նշաններին՝ ստորակետ, միջակետ, բութ, վերջակետ, կախման կետ:

Պաուզան լինում է նաև հոգեբանական: Պատմում ես մի դեպք՝ ձգտելով հասնել հուզական մեծ ներգործության: Հասնելով խոսքիդ բարձրակետին, ասում ես՝ «Տեղ հասնեմ և ի՜նչ տեսնեմ... ոչ մի շունչ արարած»: Կախման կետերի տեղն ընկնող դադարը կարող է երկարել՝ հուզական լարումն ուժեղացնելու համար:

Դադարը (պաուզան) ևս մտնում է հնչերանգի մեջ:

Բանավոր խոսքի մեջ ոչ պակաս կարևոր դեր վերապահվում է շեշտին: Կարո՞ղ եք արտահայտել ձեր դժգոհությունը՝ «Բավակա՛ն է, բավակա՛ն է, հոգիս հանեցի՛ր քո հիմա՛ր կատակներով» նախադասությունն առանց շեշտերի ասելով: Հազիվ թե, շեշտ կրող բառերը պետք է շեշտեք: Շեշտի միջոցով մենք ընդգծում ենք մեր կամքը («Գնացե՛ք, անպայմա՛ն գնացեք»), մեր հուզմունքը («Ո՛չ, ես այլևս չեմ կարող դիմադրել»), մեր համոզմունքը («Այո՛, դա՛ է միակ ել-

քը»), մեր վերաբերմունքը («Ի՞նչ կա ավելի գեղեցիկ, քան Սևանը մայրամուտին»)... Շեշտերն են, որ իմաստավորում են խոսքը, ձև ու կերպարանք տալիս նրան, հստակ դարձնում մեր բուն ասելիքը:

Չմոռանանք, որ բառաշեշտը և տրամաբանական շեշտը նույն բաները չեն: Առաջինը գործ ունի միայն բառի հետ. ի տարբերություն ռուսերենի և ի նմանություն ֆրանսերենի, հայերենը վերջնաշեշտ լեզու է, բառերի վերջին վանկն է շեշտում՝ ոչ թե Մո՛սկվա, այլ՝ Մոսկվա՛, ոչ թե Շի՛րվանզադե, այլ Շիրվանզադե՛: Իսկ տրամաբանական շեշտը գործ ունի ամբողջ նախադասության հետ՝ գլխավոր իմաստը կրող բառը կամ բառերն է շեշտում, հակառակ դեպքում խոսքը չի ստանա այն իմաստը, որ հարկավոր է: Այս առիթով արժե մտաբերել հետևյալ դեպքը: Դեռևս պատանի՝ դերասան Իգոր Իլինսկին հանդես է եկել ասմունքով: Մի անգամ, հեղինակի ներկայությամբ, նա արտասանել է Մայակովսկու բանաստեղծություններից մեկը, ուր կան այսպիսի տողեր.

Պետք է լույս արձակել՝ ի՞նչ էլ որ լինի,
Սա է լոզունգն իմ և արևի:

Պատանի ասմունքողն ուժգին շեշտել է իմ բառը և շատ թույլ արև բառը և արժանացել բանաստեղծի կշտամբանքին. «Ի՞նչ է, դուք ինձ արևի՞ց վե՞ր եք դասում»: Սխալ շեշտավորում, որ բավական է եղել հեղինակին ինքնահավան դարձնելու համար:

Շեշտը, ինչպես դադարն ու տեմպը, ունի ոչ միայն տրամաբանական, այլև հուզական-հոգեբանական դեր: Այդ երկու դերերը միշտ չէ, որ համընկնում են: Տրամաբանական շեշտ ձգտում են կրել ենթական և ստորոգյալը, չէ՞ որ դրանք են նախադասության գլխավոր անդամները: Մինչդեռ հուզական շեշտը կարող է հայտնվել ամենից անսպասելի տեղերում: Լսեցեք այս նախադասությունը. «Այդ արարքը ոչնչով արդարացնել չի կարելի, դրա համար աշակերտին վտարում ենք դպրոցից, բայց եթե նկատի առնենք այն անելանելի վիճակը, որի մեջ նա հայտնվել էր...» Գլխավոր շեշտն այստեղ ընկնում է ոչ թե ենթակայի կամ ստորոգյալի, այլ շատ համեստ բայց շաղկապի վրա: Բայց-ն այստեղ շեշտվում է ու դեռ հնչելուց հետո էլ դադար է ուզում, որպեսզի լսողների ուշադրությունը սևեռվի արդարացնող հանգամանքի վրա:

Շեշտը ևս խոսքը դարձնում է տրամաբանական, իմաստալից, հուզական շունչ է տալիս խոսքին:

Շեշտը ևս մտնում է հնչերանգ հասկացության մեջ:

Բանավոր խոսքն ունի նաև ռիթմ: Սա հունարեն բառ է, որ նշանակում է համաչափություն: Եթե այդպես է, ապա դա պետք է հատուկ լինի արվեստի մյուս տեսակներին ևս: Իրոք որ այդպես է: Նկատած կլինեք, իհարկե, թե ինչպես պարի մեջ միմյանց հաջորդող նույնակերպ շարժումները համաչափություն են տալիս ամբողջ պարին: Երաժշտության մեջ նույն դերը կատարում են երաժշտական դարձվածքների հաջորդումները՝ տարբեր ուժգնությամբ, բայց ծովի ալիքների պես համաչափ ընթացքով: Ճարտարապետության մեջ ևս առանձին մասնամասերի, ասենք, կամարների ռիթմիկ հաջորդումներն ամբողջ կառույցին տալիս են համաչափություն:

Խոսքի մեջ ևս առանձին բառերի ու դարձվածքների իմաստալից կրկնու-

թյունները ամբողջ խոսքին տալիս են համաչափություն, հուզական ուժ, ռիթմային ցայտուն նկարագիր: Դրա վարպետն է Համո Սահյանը, որի շատ բանաստեղծություններ աչքի են ընկնում այդ հատկությամբ.

Քո պարզությունը տուր ինձ, առավոտ,
Որ մանկան աչքով նայեմ աշխարհին,
Որ չտարբերեմ վայրկյանն ու տարին,
Քո պարզությունը տուր ինձ, առավոտ:

Ռիթմը հատուկ է ոչ միայն բանաստեղծությանը, այլև արձակին: Եվ այն արձակին, որ այդպես էլ կոչվում է՝ ռիթմիկ արձակ: Ահա մի քանի տող արձակի վարպետ Գուրգեն Մահարու գրվածքներից.

«Սիրում եմ ձյունը:

Սիրում եմ, երբ իջնում է նա մանր ու խոշոր փաթիլներով, իջնում է ծանր ու հանդիսավոր, թրթռում է աշխարհի վրա, քաղաքի վրա, փողոցի վրա ու տանիքի՝ վիթխարի մի ժանյակ երկրից մինչև երկինք, հորիզոնից մինչև հորիզոն:

Սիրում եմ ձյունը»:

Այսպես, ռիթմը՝ մի դեպքում հանդարտ տեմպով, մերթ արագասահ, խոսքին տալիս է հուզական ուժ, ըստեղծում այն տրամադրությունը, որ կամենում է գրողը:

Եվ ինչո՞ւ միայն գրողը, ամեն ոք, ով իր խոսքով, գրավոր լինի թե բանավոր, կամենում է ներգործել մեկ ուրիշի վրա:

Ռիթմը ևս մտնում է հնչերանգ հասկացության մեջ:

Շեշտի, պաուզայի, տեմպի ու ռիթմի շնորհիվ մենք եղանակավորում ենք մեր խոսքը, ստեղծում մեր խոսքի մեղեդին: Չկարծեք, թե մեղեդի բառը, որ վերաբերում է երաժշտությանը, բանավոր խոսքի համար գործ ենք ածում պայմանաբար: Ոչ, բանավոր խոսքն ունի իր մեղեդին, ինչպես երգը:

Ամեն մի լեզու իր մեղեդին, երանգավորման իր յուրահատկություններն ունի: Օտար լեզու չիմանալով իսկ կարելի է կռահել, թե ինչ լեզու ենք լսում ռադիոընդունիչից՝ անգլերեն, ֆրանսերեն, վրացերեն, իտալերեն... Ինչի՞ շնորհիվ՝ հնչյունային համակարգերի, եղանակավորման տարբերությունները կռահելու շնորհիվ:

«Հայ լեզուն ունի իր հատուկ հնչունավորությունը, ուրեմն և՝ համապատասխան երաժշտությունը», «Յուրաքանչյուր ազգի խոսակցական ձայնևէջը բոլորովին այլ և այլ կերպ է լինում, ուրեմն և անշուշտ երգն էլ զանազան պիտի լինի»— այսպես է գրել Կոմիտասը, և այս մտքերը հավասարապես վերաբերում են և՛ երգին, և՛ բանավոր խոսքին:

Երգի միջոցով մարդիկ արտահայտում են իրենց հիացմունքը, թախիծը, սերը, երազանքը, ձգտումը... Բայց մի՞թե այդ նույնը չենք անում խոսելիս: Երգը խոսքի եղանակավորումն է ըստ տրամադրության: Բայց մի՞թե մենք չենք եղանակավորում մեր խոսքը:

Դեպք ենք պատմում՝ պատմողաբար («Մի անգամ, անցյա՜լ տարվա ձմռանը...), կամք ենք պարտադրում՝ հրամայաբար («Կգնա՛ս և կանե՛ս, ինչպես ասացի»), մեկին ուզում ենք ետ պահել իր մտադրությունից՝ նախազգուշաբար («Դա անելու բան չի, լա՛վ մտածիր»), սաստում ենք՝ սպառնալիորեն («Տեղիցդ չշարժվե՛ս, ասում եմ»), հրճվանք ենք հայտնում՝ հիացաբար («Սքանչելի՛ է Երևանի աշունը»), ընդպատակի ենք մղում՝ կոչ անելով («Գնա՛, գնա՛ առանց ետ նայելու»),

հարց ենք տալիս՝ հարցաբար («Ինչո՞ւ չէիր եկել, ի՞նչ էր պատահել») և այսպես շարունակ: Եղանակավորման, մեղեդիավորման ձևերով բանավոր խոսքը հարուստ է անսահմանորեն:

Խոսքի մեղեդին ևս մտնում է հնչերանգ հասկացության մեջ:

Այնքան հարուստ, բազմաշերտ երևույթ է հնչերանգը, օտար բառով՝ ինտոնացիան: Գրավոր խոսքն էլ իր հնչերանգն ունի, բայց դա հեռու է հնչող խոսքի հուզական հարստությունից: Կարող ենք մարդու հենց միայն անունը տալ, և նա հնչերանգից արդեն կարող է հասկանալ՝ սաստո՞ւմ ենք իրեն, թե սպառնում, սիրո՞ւմ , թե արհամարհում, կշտամբո՞ւմ, թե խրախուսում... Հենց միայն անունը տալով:

Ահա՛ թե ինչ է նշանակում խոսքի հնչերանգ, օտար բառով՝ ինտոնացիա:

Մենք գործ ենք ածում հնչերանգը, բայց խորհուրդ չէինք տա ինտոնացիան մոռացության տալ: Չէ՞ որ մենք առօրյա կյանքում ասում ենք՝ «Այդ տոնով խոսել չի կարելի», «Բարձր տոն է վերցրել», «Տոնդ փոխիր», «Խոսելու տոնից կարելի է կռահել», «Խոսիր, բայց ոչ այդ տոնով», «Գունային կիսատոներ», «Տոնային նուրբ անցումներ» և այլն: Այս բոլոր արտահայտությունները կապված են տոն բառի հետ, որ հունարեն նշանակում է լարում, շեշտում, ձայնի բարձրացում: Իսկ ինտոնացիան արդեն իտալերեն է, որ նշանակում է բարձր եմ խոսում, բայց ժամանակի ընթացքում հեռացել է այդ պարզ իմաստից, ձեռք բերելով բանավոր խոսքի հատկանիշներն ի մի բերող տերմինի նշանակություն:

Այն հատկանիշների, որոնց մասին խոսեցինք այս գրույցում:



Նկ. ԱՐԱ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ

*ՎԻԿՏՈՐՅԱ ՎԱՐԴԱՆ*

# ՃԱՄՓՈՐԴԸ

Այդ օրը, երբ սև ոչխարենու փափախով մարդը բախեց մեր դռնակը, ոչ մի բանով աչքի չընկնող, սովորական ամառային օր էր: Ես թթենու տակ ինձ համար պարսատիկ էի շինում, իսկ մեծ մայրիկը մառանում սեղանի վրա տաք-տաք լավաշներ էր փռում, որը հենց նոր էր հանել թոնրից: Սառչելիս, լավաշները ամբողջ տնով ու բակով մեկ նոր թխած հացի հաճելի բույր են արձակում, որ գրգռում են հոտոտելիքըդ ու ստիպում թուքդ կուլ տալ:

— Է՜յ, տանը մարդ կա՞,— կոտրատված հայերենով կանչեց ոչխարենու փափախով մարդը: Բառերի շեշտադրությունից իսկույն գլխի ընկա, որ նա ադրբեջանցի է:

— Կա,— պատասխանեցի ես, գլուխս բարձրացնելով:

— Մայրիկդ տա՞նն է:

— Մայրիկը՝ չէ, մեծ մայրիկն է տանը:

— Ո՞վ, ո՞վ...

— Ասում եմ, տատս տանն է:

— Որտե՞ղ է տատդ, կանչի՛ր,— ասաց փափախավոր մարդը ու երկու ձեռքով ծանր հենվեց հաստ, ուստոտ փայտին: Նրա դեմքի մաշկը թուխ էր, ասես ճմռթված լիներ, շրթերը փոշու մեջ կորած:

— Մեծ մայրի՜կ,— գոռացի ես,— քեզ կանչում են:

— Ի՞նչ ես գոռում, Գևո՛րգ, խո՞ւլ եմ, ի՞նչ է,— բայց, տեսնելով անծանոթին, մեծ մայրիկը լռեց, ձեռքերը սրբեց գունաթափ գոգնոցով ու հարցական նայեց անծանոթին:




— Բաջի,— ասաց ադրբեջանցին, հանելով փափախն ու մոխրագույն ճմռթված թաշկինակով սրբելով ճակատի քրտինքը,— սառը ջուր չի՞ ճարվի:

— Ինչո՞ւ չի ճարվի: Գևո՛րգ, տուն վազիր ու ջո՛ւր բեր:

Ես կավե մեծ գավով ջուր բերի ու տվի ճամփորդին:

Նա ագահաբար վրա ընկավ ջրին ու պոկ չեկավ մինչև չխմեց բոլորը, մինչև վերջին կաթիլը... Ես հետաքրքրությամբ նայում էի, թե ինչպես է նրա ադամախնձորը վերուվար անում, կարծես լարովի լիներ: Քրտինքը թևատակից կիսալուսնի նման դուրս էր տվել զինվորական հին բլուզի տակից: Ես իսկույն գլխի ընկա, որ ճամփորդը զորացրված ճակատային է, կամ էլ արձակուրդ եկած զինվոր:

— Երևում է, հեռվից ես գալիս,— ասաց մեծ մայրիկը:

— Հա՛, Աղդամից եմ գալիս,— պատասխանեց ադրբեջանցին ու նորից գլխին դրեց սև փափախը:

— Վաղո՞ւց ես ճանապարհ ընկել:

— Առավոտ ծեգին, բաջի՛:

— Էն շոգ-կրակին...

— Ի՞նչ անեմ, բաջի՛, հարկավոր է,— հառաչելով ասաց ադրբեջանցին:—

Դե, ես գնամ, թե չէ արևն արդեն թեք֊վում է։

Եվ նա, հոգնած ոտքերը քարշ տա֊լով, շարժվեց դեպի դռնակը։

Հինգ րոպե, կամ գուցե ավելի անց, մառանից դուրս վազեց մեծ մայրիկն ու ասաց.

— Գնո՛րգ ջան, շո՛ւտ արա, վազի՛ր նրա ետևից ու ե՛տ կանչիր։

— Ո՞ւմ ետևից։

— Էն մարդու, որ եկավ ջուր ուզեց։ Վա՛զ տուր ետևից։

— Ինչի՞ համար։

— Շո՛ւտ, շո՛ւտ, թե չէ չես հասնի։

Ես դուրս թռա ու մի քանի րոպե անց վերադարձա փափախավոր մար֊դու հետ։

Մեծ մայրիկն արդեն մեզ սպասում էր բակում։

— Վերցրո՛ւ,— ասաց նա ադրբե֊ջանցուն մեկնելով երկու թարմ լա֊վաշ։— Վերցրո՛ւ, ճանապարհին կը֊սովես կուտես, թող աստված չարից, փորձանքից հեռու պահի քո ծեր մորը...

— Շնորհակալ եմ, բաջի՛,— մի քիչ քաշվելով ասաց ադրբեջանցին և լա֊վաշը խուրջինը դրեց։

— Հեռո՞ւ ես գնում։

— Ախունդով եմ գնում, բաջի՛։

— Գործ ունե՞ս էնտեղ։

— Չէ՛։ Քրոջս մոտ եմ գնում, դժբախ֊տություն է պատահել. մի շաբաթ առաջ ամուսնու սև թուղթն է եկել։ Ամբողջ պատերազմին կռվեց, մի քերծ֊վածք չունեցավ, հիմի եկավ վերջում էսպես... Երևի ճակատագիրն էր...

— Տե՛ր աստված։ Երեխեք ունի՞ քույրդ։

— Է՛հ, հենց բանն էլ այդ է, որ երեք որբ մնացին,— տխուր ասաց փափա֊խավոր մարդը։— Դե, մնաք բարո՛վ, բաջի՛, թող ալլահը երկար կյանք տա ձեզ։

Մեծ մայրիկը ձեռքերը ծալեց փորին ու մտախոհ հայացքը հառեց դռնակին, որտեղից դուրս էր եկել ադրբեջանցին։ Եվ հանկարծ՝ կարծես մեղուն խայթեց.

— Գնո՛րգ, շո՛ւտ վազիր այդ մարդու ետևից։

— Էլի՞։ Ինչի՞ համար։

— Լսեցի՞ր, թե ինչ վիշտ ուներ այդ մարդը։

— Լսեցի,— պատասխանեցի ես տա֊րակուսած։

— Դե որ լսեցիր, թռիր ու ե՛տ բեր նրան։

Ես նորից դուրս վազեցի դռնակից։ Այս անգամ փափախավոր մարդը բա֊վական հեռացել էր։ Դժվարությամբ հասա նրա ետևից։ Երբ մենք բակ վերադարձանք, մեծ մայրիկը կանգնել էր գոգնոցի ծայրը ձախ ձեռքը հավա֊քած։

— Սա քո խեղճ քրոջ երեխաների համար, և թող սրանից հետո աստված նրանց հեռու պահի չարից ու փորձան֊քից,— ասաց նա և գոգնոցից հանեց մի քանի կտոր շաքար ու հինգ թե վեց հատ չոր կարկանդակ, քաղաքից բերած անուշեղենի գրեթե ողջ պա֊շարը։ Ես զարմացած նայում էի տա֊տիս։ Ինքն ասում է, թե հիմա պատե֊րազմական ժամանակներ են և պետք է խնայել մթերքը, և գրեթե ամբողջ եղած-չեղածը տալիս է առաջին պա֊տահած մարդուն։

— Հարկավոր չի՛, բաջի՛, շաքարը ձեզ էլ է պետք,— ասաց փափախավոր մարդը, և իսկույն էլ ուսից իջեցրեց խուրջինը, որի մեջ տասս գցեց շա֊քարն ու կարկանդակները։— Թող ալլա՜հը քո բարի սրտովը տա քեզ։

— Ոտքդ ի՞նչ է եղել,— հարցրեց մեծ մայրիկը։

— Ռազմաճակատում եմ վիրավորվել։ Վերջերս եմ զորացրվել։ Դե՜, մնաք բարով...

Եվ գնաց։ Բավական անցել էր, ես նորից ձեռքս էի առել պարսատիկը։

— Գևոր՜գ,— նորից շեմին կանգնեց մեծ մայրիկը։— Գևո՛րգ, վազի՛ր էն մարդի ետևից։

— Դո՛ւ վազիր, ես էլ գնացողը չեմ։

— Քեզ ասում եմ վազի՛ր։

Ես ուսերս թոթվեցի. մեծ մայրիկից բան կհասկանա՞ս։ Բայց և այնպես վազեցի անծանոթին ետ վերադարձնելու։ Նա զարմացած նայեց ինձ և վերադարձավ։

— Էս գիշերվա կեսին ո՞ւր ես գնում, ա՛յ բարի մարդ։ Մնա՛ մեզ մոտ կքնես, առավոտը շուտ աստծով ճանապարհ կընկնես։

Եվ մեծ մայրիկը ընթրիքի պատրաստություն տեսավ։ Մոմլաթով ծածկված սեղանին դրեց այն ամենը, ինչ ճարվում էր տանը, իսկ հետո նստեց նրա դիմաց և գոհունակ դեմքով երկար նայում էր նրան, կարծես ավելի մեծ հրճվանք չկար, քան նայելը զորացրված զինվորին, որը հերթով խժռում էր ամեն ինչ և կավե գավաթից խմում գինին։ Ընթրիքից հետո տատս պատշգամբում անկողին գցեց նրա համար, և մի քանի րոպե անց, բարձրացավ մեր հյուրի խռմփոցը։

Քնելիս ես տեսա մեծ մայրիկին նստած իր սովորական դիրքով՝ ձախ ձեռքը փորին, աջ ձեռքով մտահոգ փակել էր բերանը։ Կասկած չկար, որ նա միտքը չարչարում էր, թե առավոտը ինչ տա փափախավորին։

# ԿԱՐՄԻՐ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԴՐՈՇ, ԿԱՐՄԻՐ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԴՐՈՇԱԿ




Պիոներական դրոշն ու դրոշակը հեղափոխության գործին, կոմունիզմի գործին նվիրվածության նշան են։ Պիոներական դրոշի և դրոշակի գույնը կարմիր է, ինչպես և մեր հայրենիքի պետական դրոշի, կուսակցական ու կոմերիտական դրոշների գույնը։ Կարմիր գույնը արյան գույնն է, որ ավագ սերնդի մարտիկները թափել են հեղափոխության օրերին, մեր երկրի ազատության և անկախության համար մղված դաժան մարտերում։ Յուրաքանչյուր դրուժինա ունի իր պիոներական դրոշը, յուրաքանչյուր ջոկատ՝ իր պիոներական ջոկատային դրոշակը։ Հայրենիքի համար կատարած մեծ և պատվավոր գործի համար շատ պիոներական դրուժինաներ պարգևատրվել են կոմերիտմիության կոմիտեների, զորամասերի, պատերազմի և աշխատանքի վետերանների, սովետների հուշադրոշներով։

Կարմիր պիոներական դրոշներն ու դրոշակները խնամքով պահվում են պիոներական սենյակում։ Նրանք դուրս են բերվում ջոկատի և դրուժինայի հավաքույթներին, հանդիսավոր տողաններին, իսկ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԴՐՈՇԸ՝ համամիութենական պիոներական հավաքներին, Կարմիր հրապարակում կայացվող պիոներական շքերթներին, մեր երկրում անցկացվող միջազգային մանկական փառատոներին։

Արժանի լինել դրոշին և դրոշակին, նշանակում է միշտ և ամեն ինչում արդարացնել պատանի լենինյանի բարձր կոչումը։

## ԻՐԵ՛ՆՔ ԻՐԵՆՑ ՄԱՍԻՆ

«Пионер»-ից

# ԾԵԾԿՌՏՈՒ՞Ք, ԹԵ՞ ՄԵՆԱՄԱՐՏ



Ես երբեք ոչ մեկին չեմ նեղացնում, ընդհանրապես կռվել չեմ սիրում: Ճիշտ է, մի անգամ, այնուամենայնիվ, ստիպված կռվեցի: Կինոթատրոնում էր: Այնտեղ մի ստահակ փոքր երեխայից քսան կոպեկ էր խլել: Եվ ես ու դժբախտ հափշտակիչը կարճ, բայց բովանդակալից «խոսակցություն» ունեցանք, որից հետո նա խայտառակ փախուստի դիմեց:

Եվ ես հիմա մտածում եմ՝ ծեծկռտուքը վատ բան է: Իսկ եթե արդարության համա՞ր ես կռվում: Լա՞վ է, թե՞ վատ: Ի՞նչ եք կարծում:

*ՎԱԴԻՄ ՄԱՐՄԱԶԻՆՍԿԻ*
*ք. Տուլա*

# ԻՆՉԻ՞ ՏԵՂ ԴՐԵՑ ԻՆՁ



Ես գերազանցիկ եմ: Ծարունակ, ամեն օր, ինձանից պահանջում են, այո՛, հենց պահանջում են, թե «Տուր տետրդ, արտագրենք»: Երբ մերժում եմ, սկսում են չարախոսել, թե ես սուտ գերազանցիկ եմ, ուսուցիչները ինձ կողմնապահություն են անում: Բայց չէ՞ որ այդ ճիշտ չէ, ուսուցիչները ինձ նույնիսկ ավելի խիստ են քննում: Ֆիզիկան ես հեշտ չեմ սովորում, պատահում է մինչև գիշերվա տասներկուսը նստում եմ, բայց երբեմն «չորս» եմ ստանում:

Սկզբում ես միայն վիրավորվում էի: Իսկ հիմա անասելի վատ եմ զգում ինձ: Եվ այդ ահա մի այսպիսի դեպքից հետո: Հանրահաշվիս տետրը չտվեցի մի աղջկա, որ արտագրի: Նա մի կոնֆետ դրեց իմ առջև: Ես սաստիկ վրդովված, վերադարձրի կոնֆետը, հետն էլ տետրս, որ արտագրի: Վերհիշելով կատարվածը, մտածում եմ, թե նա ինձ ինչի՞ տեղ դրեց, շնիկի՞, որին պատառ են նետում:

*ՍՎԵՏԼԱՆԱ ԼՈՄԱԿԻՆԱ*
*Վոլխոնշչինա գյուղ,*
*Տամբովի մարզ,*

ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ

# Թռչունների աշխարհում

Մի օր մեր այգում շրջում էի ես,
աղմուկ լսեցի՝ կռիվ էր ասես,
մոտեցա և ի՜նչ՝ ծառաբնի մոտ
կաչաղակներն են խմբվել աղմկոտ:
Չորս թե հինգ ձագուկ,
փոքրիկ ու փափուկ,
գլխիկներն իրենց բնից դուրս հանած,
նայում են լուռ ու սաստիկ վախվորած:
Իսկ հայր ու մայրը խիտ ճյուղերի մեջ
նստած կողք-կողքի ծվծվում են խեղճ:
Մտքովս անցավ՝ չլինի՞ հանկարծ
կաչաղակները նեղում են դրանց:
Ինչպե՞ս պաշտպանեմ...
Մեկ էլ ի՜նչ տեսնեմ.
մի չաղտիկ կատու աչքերը սրած,
ճանկերը ծառի բնի մեջ խրած,
մագլցում է վեր:
Եվ զգուշորեն այդ չար բկլատը
դեպի ձագերն է մեկնում իր թաթը:
Հենց ճիշտ այդ պահին
սկսվում է մի գրոհ թռչնային,
խառնվեց ամեն ինչ՝
մլավոց, կռինչ...
Մեկ էլ այն տեսա,
որ կատուն սաստիկ մի մղկտոցով,
ողբ ու ոռնոցով,
ծառից ընկավ ցած...
Եվ այսպես ահա գիշատիչ կատվին
կաչաղակները մի լավ դաս տվին:
Բայց ամենից շատ ինձ հուզեց մի բան,
որ թռչունների աշխարհում անգամ
ուժեղը թույլին կանգնում է պաշտպան:

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ




# ԱԼԱ ԹԱՈՒԻ ՎԵՀՈՒԹՅՈՒՆԸ

*ԱԲԴԻԼԴԱ ԿԱՐԱՍԱՅՈՎ*
*(Կիրգիզիա)*

Իմ հայրենիքը հարուստ է եղել, հարուստ է հիմա
Պատկառելի ու հպարտ լեռներով Ալա Թաուի,
Եվ թե փորձ անես գանձն այդ նկարել կտավի վրա,
Պետք է իմանաս արժանի լեզուն նրա գույների:

Ինչ տեսակ ներկ էլ հարկավոր լինի ու ինչ տեսակ գույն,
Իմ ժողովուրդը դրանից ունի, անպայման ունի,
Եվ սպասում են, և սպասում են գույներն իմաստուն,
Որ նկարիչն իր ներկապնակում իրենց ընդունի:

Բայց այդ գույներին, խոսուն գույներին դու ավելացրու
Քո տաք արյունը, քո սերը նաև ու քո տաք հոգին,
Արշալույսների հրացոլքերը ավելացրու,
Որ շողշողում են ամեն, ամեն օր լեռնաճյուղերին:

Ավելացրու և քո երազանքը՝ նկարչին վայել,
Ե՛վ երգը, երգը Տոկտոհուլի ողջ լայնությունների,
Ե՛վ ճերմակահեր ախսախկալների պատիվը նաև,
Ե՛վ ժողովրդի իմաստությունները հավերժ սիրելի:

Եվ չմոռանաս ավելացնել այդ գույների վրա
Հայրական տաք ձեռք, մայրական ժպիտ՝ որպես բարի լույս,
Որոնց օրորով տաքացել ես դու, աճել ես ահա
Ու նրանց համար դարձել նպատակ, երազանք ու հույս:

Եվ ահա հիմա
Ներկապնակում ինչ պետք է՝ ունես,
Խիզախ նկարիչ կոտ գագաթները
Եվ Ալա Թաուն դու կպատկերես:

*Թարգմ. Մ. ՈՍԿԱՆՅԱՆԻ*

# «ԲԱՅԳԱ» նշանակում է ՏՈՆ

Տարին երկու անգամ՝ մայիսի վերջին և բերքահավաքից հետո, մեր սովխոզում անց են կացվում ձիարշավներ: Մրցումները մենք կոչում ենք «բայգա», որ նշանակում է տոն:

Այդ միջոցառումներին միշտ էլ մեծ է մասնակիցների ու հանդիսատեսների թիվը: Զարմանահրաշ տեսարան է բացվում աչքիդ առաջ. հրեղեն ձիերի վրա նստած տափաստանով սուրում են վառ, ազգային տարազներով հեծյալները: Նրանք թռչում են քամուց էլ արագ: Բոլորն էլ՝ խիզախ, ուժեղ ջիգիթներ, ճարպիկ հեծյալներ: Նրանց չեն զիջում և աղջիկները:

Ձիավարության մրցումները բազմազան մրցաձևերից են բաղկացած: Ամենահետաքրքիրներից մեկը կոչվում է «կըզ կառու» («հասիր աղջկան»): Ձիերը հեծած՝ շրջան են մտնում մի տղա ու աղջիկ: Լսվում է մրցավարի սուլիչի ձայնը, և աղջիկը սուրում է առաջ, իսկ տղան պետք է հասնի նրան: Թե հասավ՝ կստանա հաղթողի պարգևը, իսկ թե չէ՝ պետք է խուսափի աղջկա մտրակի հարվածներից: Թեկուզև կատակ է դա, բայց ջիգիթի համար՝ խայտառակություն է:

*ԿԱՄԱՃ ԿՈՒՏՏԻԲԱԵՎԱ*
*Ցելինոգրադի մարզ,*
*Կալինինի անվան սովխոզ*

# ՀԱՐՑՐԵԼ ԵՔ ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

**Ի՞նչ կապ ունի կարմիր խաչը շտապ օգնության մեքենայի հետ: Ինչո՞ւ է բժշկական զանազան ցուցանակների և վերջապես մեր դասարանական սանարկղիկի վրա կարմիր խաչ պատկերված:**

*ԿԱՐԻՆԵ ԳՐԻԳՈՐՅԱՆ*
*Արտաշատի շրջան, գյուղ Բյուրավան,*
*4-րդ դասարանի աշակերտուհի*

Պատերազմի դաշտում վիրավորներին, իսկ խաղաղ ժամանակ վթարներից տուժածներին օգնություն հասցնելու գաղափարն ունի դարերի պատմություն: Հնում այդ գործով հիմնականում զբաղվում էին միանձնուհիները, որոնք կոչվում էին «գթության քույրեր» և կրծքերին խաչ էին կրում:

Հետագայում, 1863 թվականին, Շվեյցարիայում կազմակերպվեց «Կարմիր խաչի» միջազգային կոմիտե և նրա խորհրդանիշը դարձավ խաչը, որն, ի դեպ, պատկերված է և շվեյցարական պետական դրոշի վրա: Բայց ամենուր չէ, որ բժշկական «շտապ օգնության» խորհրդանիշը կարմիր խաչն է: Օրինակ՝ Թուրքիայում այն փոխարինված է կարմիր կիսալուսնով (մահիկ), իսկ Պարսկաստանում՝ կարմիր առյուծի և կարմիր արևի պատկերով՝ կապված նրանց կրոնական խորհրդանշանների հետ: Մեր հանրապետություններից մի քանիսում (Ադրբեջան, Ուզբեկստան) հանդիպում է կարմիր խաչի և կարմիր կիսալուսնի համատեղ նշանը:

Հայաստանում «Կարմիր խաչի» ընկերությունը հիմնադրվել է 1921 թվականին:

*Վ. ԽԱՉՈՅԱՆ*

ԳԵՎՈՐԳ ՍԱՐԳՍՅԱՆ

# ԱՆՊԱՐՏԵԼԻՈՒԹՅԱՆ ԳԱՂՏՆԻՔԸ

*(Հեքիաթ)*

Երեք որդի ուներ թագավորը, երեքն էլ՝ բարձրահասակ ու հաղթաբազուկ։ Մինչ քսան տարեկան դառնալը նրանք կոփել էին իրենց մարմինը և գիտություններ ուսանել ծեր իմաստունների մոտ։

«Գիտություններ ուսանելը այլ բան է, երկիրը և ժողովրդին կառավարելը այլ բան»,— մտածում էր արքան։ Եր-



կար մտածեց, բայց չկարողացավ որոշել, թե որդիներից որը թագավորի իրենից հետո։ Կանչեց նրանց իր մոտ և ասաց.

— Զավակնե՛րս, քսան տարի է թշնամիներից ոչ մեկը չի հարձակվել մեզ վրա, քսան տարի է խաղաղություն է իշխում երկրում և ժողովուրդը մոռացել է պատերազմի տառապանքը։ Բայց ահա ես ծերանում եմ, թշնամիները անհամբեր մահվանս են սպասում, որպեսզի նոր պատերազմ սկսեն, մեր հարուստ ու գեղեցիկ երկրին տիրանան։

— Մենք կդիմագրավենք, հա՛յր,— ասացին որդիները միաբերան,— ջարդ կտանք, կվռնդենք ոսոխին։

— Ես տալիս եմ ձեզ հինգ տարի ժամանակ։ Հինգ տարի անց դուք պետք է ներկայանաք ինձ և ապացուցեք, որ ընդունակ եք երկիրը ոսոխից պաշտպանել։

— Իսկ ի՞նչ պետք է անենք մենք, հա՛յր, որպեսզի համոզենք քեզ։

— Որոշեք ինքնե՛րդ, զավակնե՛րս,— ասաց թագավորն ու ոտքի ելավ։

Որդիները հրաժեշտ տվին իրենց հորը, հագան զենք ու զրահ, ձի հեծան և դուրս ելնելով քաղաքի դարպասներից՝ գնացին տարբեր ճանապարհներով։

Անցավ հինգերորդ տարվա վերջին օրը և հայր թագավորը, որ ծերացել էր ևս հինգ տարով, սկսեց ամեն օր բարձրանալ պալատի ամենաբարձր աշտարակը, ձեռքը աչքերին հովանի արած երկար նայել հեռուներից մայրաքաղաք բերող փոշոտ ճանապարհներին։

Օրերն անցնում էին, բայց որդիներից ոչ մեկը չէր երևում։ Վերջապես, օրերից մի օր, վաղ լուսաբացին, երբ թագավորը կանգնել էր աշտարակին և, ձեռքը աչքերին հովանի, հեռուներն էր դիտում, ճանապարհներից մեկի վրա մի ձիավոր նշմարվեց։

Արագ զարկեց ծեր թագավորի սիրտը, փութով իջավ աշտարակից, հրամայեց բացել դարպասները, իսկ ինքը գնաց, նստեց գահին։

Փոշեթաթախ ու հոգնած, բայց ուրախ ու կարոտով ներս մտավ ավագ որդին և արքայի ոտքերի առաջ փռեց մի լայն կերպաս՝ վրան նկարված ամրակուռ բերդեր, աշտարակներ ու պարսպապաշտպան գործիքներ։

— Տասնյակ ասպիսի բերդեր են հիմնված ու դեռ կհիմնվեն մեր երկրի բոլոր կողմերում, հա՛յր,— ասաց որդին զինվորին վայել խրոխտ





ձայնով,— ոչ մի թշնամի չի կարող գրավել այդ բերդերը։

— Ապրե՛ս, որդի՛ս,— ասաց հայրը, ոտքի ելավ, համբուրեց ավագ որդու ճակատը,— շնորհակալ եմ, որ ինձ հուսախաբ չարիր։

Էլի օրեր անցան և մի առավոտ էլ թագավորը աշտարակի բարձրությունից փոշու մեծ ամպ տեսավ ճանապարհին։

Անհանգստացավ ծեր արքան, նրա փորձված ու սրատես աչքերը զենքի ու զինվորական հագուստի փայլ տեսան փոշու ամպի մեջ։ Ձայն տվեց բերդապահին ու հրամայեց զորքը ոտքի հանել ու պատրաստվել կռվի։

Փոշու ամպը մոտեցավ և կանգ առավ քաղաքի պարիսպների մոտ։ Նրանցից մի ձիավոր զատվեց, սրընթաց եկավ դարպասների մոտ, հանեց մետաղակուռ սաղավարտը և բարձրագոչ ձայնեց.

— Հա՛յր, դու՛րս արի դաշտ, ես ուզում եմ քեզ ցույց տալ, թե ինչպես եմ պաշտպանելու իմ հայրենիքը։

Հայրն ուրախացած միջնեկ որդու վերադարձով, փութով վար իջավ աշտարակից և գնաց քաղաքից դուրս, որ տեսնի, թե ինչպես է որդին մտադիր պաշտպանելու իր հայրենիքը։

Երկու հարյուր հեծյալ բաժանվեցին երկու խմբի և հեռանալով իրարից, պատրաստվեցին մարտի։ Միջնեկ որդու գլխավորությամբ խմբերը մինչև երեկո ցուցադրեցին թշնամուն դիմագրավելու, կռվելու, հաղթելու և գերելու հնարքներ՝ գործադրելով իրենց ուժը, խելքը, ճարպկությունը։

Երբ արևը մայրամուտ էր գնում, միջնեկ որդին պադարեցրեց մարտախաղը, մոտեցավ հորը և ասաց.

— Այսպիսի բազում մարտիկներ են այժմ հսկում մեր երկրի սահմանները, հա՛յր, և ոչ մի թշնամու չի հաջողվի մտնել մեր երկիրը...

— Ապրե՛ս, որդի՛ս,— ասաց հայրը, ոտքի ելավ, համբուրեց միջնեկ որդու ճակատը,— շնորհակալ եմ, որ ինձ հուսախաբ չարիր։

Էլի օրեր անցան։ Թագավորը ամեն առավոտ դարձյալ բարձրանում էր ամենաբարձր աշտարակն ու սևեռուն դիտում հեռուները։ Եվ մի օր էլ ճանապարհներից մեկի վրա հետիոտն փոքրաթիվ խումբ երևաց։

Նորից արագ զարկեց ծեր արքայի սիրտը, փութով իջավ աշտարակից, հրամայեց բացել դարպասները և չըսպասելով եկողների տեղ հասնելուն, ուժ տվեց ծերացած ոտքերին, գնաց եկողներին ընդառաջ։

Հանդիպեց արքան որդուն ու նրա հետ եկող յոթ երիտասարդներին, և նստեց կաղնու տակ, հոգնած ոտքերը հանգստացնելու։ Որդին, հոտնկայս իր ուղեկիցների հետ, այսպես ասաց իր հորը.

— Հա՛յր, հինգ տարում ես շրջեցի ժողովրդի մեջ, ապրեցի նրանց հետ, օգնեցի նրանց վար անել, օգնեցի նրանց ցանել և հունձ անել, օգնեցի նրանց կառուցել տներ ու տաճարներ, խաչեղբայր եղա նրանց հարսանիքներում, մասնակից եղա նրանց ուրախությանը և լացին, երբ նրանք սգում էին, քնեցի նրանց կողքին ու կերա միևնույն ամանից, ուս ուսի կռվեցի գազանների ու արհավիրքի դեմ և նորակառույց տաճարներում նրանց հետ երդվեցի եղբայր լինել, հայր ու



որդի, եղբայր և քույր, որդի և մայր։ Քո երկրի բոլոր մարդկանց սերն եմ բերել ինձ հետ, նրանց բարեկամությունը և իմ եղբայրներից յոթին։ Օրհնի՞ր մեր եղբայրությունը, հա՛յր։

— Անպարտելի՛ է իմ երկիրը, որդի՛ս,— ասաց ծեր արքան, և արցունքն աչքերին ոտքի ելավ, համբուրեց նախ իր որդու ճակատը, ապա համբուրեց իր որդու յոթ եղբայրների ճակատը և նրանց պալատ հրավիրեց։ Երեկոյան թագավորը կանչեց այնտեղ նաև պալատականներին ու իշխաններին, կանչեց քաղաքի ավագներին և ասաց.

— Ժամանակը միշտ էլ հաղթել է ամենազորեղ արքաներին, խարխլել ու քանդել ամենաամուր բերդերը, անուժ դարձրել անպարտելի բանակները, թշնամուն հանձնել հզոր երկրներ ու նրանց ժողովուրդներին։ Բայց անպարտելի է այն թագավորը, որ բարեկամ է իր ժողովրդին, նրա եղբայրն է ու խաչեղբայրը, ով ուրախ է նրա ուրախության ժամին և արցունք է թափում, երբ նա սգում է։ Ես գահն հանձնում եմ իմ փոքր որդուն, խնդրում եմ նրա երկու եղբայրներին հոր իրավունքով և հրամայում՝ ժողովրդի անունից, որ նրանք նեցուկ լինեն իրենց եղբորը, իսկ երեքով մեկտեղ՝ ծառա լինեն ժողովրդին։ Եվ պարտավորեցնում եմ բոլոր երեքին էլ, մեր նախնիների թափած սուրբ արյունով, որ ինչքան էլ կարծրանա ձեր սրտերը, ինչքան էլ պակասի ձեր մտքի կորովը և ինչքան էլ թուլանա ձեր բազուկը, երբեք թիկունք չդարձնեք ժողովրդին և կեղծիքով չշաղախեք ձեր բարեկամությունը ժողովրդի հետ։

Ավարտեց հայրը թագավորական իր վերջին խոսքը, իջավ գահից, նստեցրեց փոքր որդուն իր տեղը, արքայական գավազանը տվեց նրա ձեռքը և ուրախության արցունքներն աչքերին բարի ծառայություն մաղթեց նրան։

Գրկախառնվեցին և յոթ երիտասարդներն իրենց արքա հոր հետ և ապա իրենց արքայորդի եղբայրների հետ, հրաժեշտ տվին նրանց ու վերադարձան իրենց աշխարհները՝ ուխտելով եղբայրություն սերմանել նաև իրենց զավակների ու թոռների հոգում։

Եվ երկար, շա՜տ երկար տարիներ թագավորեց փոքր եղբայրը, որովհետև ժողովուրդը սիրում էր նրան, իսկ երկու եղբայրները հավատարիմ էին ծեր արքայի իմաստուն պատվիրաններին։







## ՄԵՐ ՀՅՈՒՐԸ

# ՄԱՅԱ ՉԻԲՈՒՐԴԱՆԻՁԵ

— Քրոջս աղջիկը ուզում է ձեզ հետ շախմատ խաղալ, խնդրում եմ չմերժեք,— մի անգամ «Քութայիսի» թերթի խմբագրության աշխատակիցներին ասաց Դոդո Խուրցիձեն:

— Ո՞վ է քո քրոջ աղջիկը:

— Ահա այս աղջնակը:

— Ծիծաղո՞ւմ ես, ի՞նչ է,— միաբերան ասացին մեծ քեռիները, տեսնելով ութամյա փոքրիկին:

— Քեռի՛ Սերգո, ես ձեզ խնդրում եմ,— դիմեց աղջիկը խմբագրի տեղակալին:

Ստիպված էին համաձայնել: Եվ ի՞նչ, փոքրիկը մի լավ դաս տվեց բոլորին: Քեռի Սերգոն հիշում է, որ պարտիաներից մեկում աղջիկը իր թագուհին հարվածի տակ դրեց:

— Քայլը ետ չեմ տա, երեխաներին երես տալ չի կարելի,— ասաց խաղացողը և թագուհին վերցրեց: Փոքրիկը պատասխանեց ժպիտով և նավակի հաջորդ քայլով կտրեց արքայի ճանապարհը և ապա զինվորներով երկու քայլից մատ հայտարարեց:

Քեռի Սերգոն գրասեղանի դարակից հանեց աշխարհի շախմատի չեմպիոնուհի Նոնա Գափրինդաշվիլու նկարը, ետևում մակագրեց «Մայային՝ ապագա չեմպիոնուհուն, 9 հուլիսի, 1969 թ.»:

Մայա Չիբուրդանիձեն այդ նկարը պահում է սրբությամբ, որպես թալիսման:

Շախմատի աշխարհի բոլոր չեմպիոնների մանկությունը համարյա միանման է եղել. վաղ հասակից սկսել են կարդալ ու գրել, դպրոցում սովորել են գերազանց, ունեցել են լավ հիշողություն, հիանալի երևակայություն...

Բայց չէ՞ որ նման ընդունակություններով երեխաներ աշխարհում շատ կան, ապա ինչո՞ւ նրանք աշխարհի չեմպիոն չեն դառնում: Այս հարցին հիանալի է պատասխանել Մայայի նախկին մարզիչներից մեկը՝ Միխայիլ Շիշովը. «Մայան անսահմանորեն սիրում է շախմատը: Թեև շատ աշխույժ է և կենսախինդ, հեշտությամբ է տանում ամենօրյա երեք ժամ տևող պարապմունքները»: Գաղտնիքը, ուրեմն, ոչ միայն տաղանդի, այլև աշխատասիրության մեջ է:

Սկզբում, իհարկե, զարմանալի էին թվում փոքրիկ Մայայի շախմատային նվաճումները. նա շատ կարճ ժամանակում գրավեց մասնագետների ուշադրությունը, 12 տարեկան հասակում դարձավ վարպետության թեկնածու, 13 տարեկանում՝ սպորտի վարպետ, և ապա միջազգային վարպետ: Երբ Ն. Գափրինդաշվիլին առաջին անգամ նվաճեց «շախմատային թագը», Մայան մեկ տարեկան էր, իսկ երբ հինգերորդ անգամ նվաճեց, Մայան արդեն համարվում էր նրա ամենալուրջ մրցակցուհիներից:

Եվ ահա, 17-ամյա Մայա Չիբուրդանիձեն 1978 թվականին նվաճեց Նոնա Գափրինդաշվիլու հետ հանդիպելու իրավունքը: Հանդիպեց և հաղթեց: Իսկ դրանում արդեն ոչ մի զարմանալի բան չկար:

Մեր ընթերցողները գիտեն, որ «շախմատի թագուհին» իր տիտղոսը պահպանեց նաև 1981 թվականին, հաղթելով իր մեկ ուրիշ հայրենակցուհուն՝ Նանա Ալեքսանդրիային:

*Լ. ԱՆԱՆԻԿՅԱՆ*

Իմ աշխատանքային այս մի քանի ամիսների ընթացքում անասնաբույժ Վերանը առաջին անգամ թռչնանոց մտավ: Եկավ «Բելոռուսի» հետ, առանց ֆերմայի վարիչի: Հաղթանդամ մարմինը մի կերպ խցիկից հանեց, մեծ-մեծ քայլերով բակում պտտվեց, աչք ածեց թռչնանոցի ներս ու դուրսը՝ ինքն իր հետ խոսելով, ապա դարձավ Մնացին.

— Ի՞նչ ես զարմացած նայում, առաջին անգամ ե՞ս ինձ տեսնում... Էս ի՞նչ է էս հավերի շնորհքը, ո՞ւր են սրանց փետուրները:

Մնացը թե՝

— Թափվել են:

— Թափվե՞լ են, թե՞ Վարսենիկն է փետել:

— Մեկ-մեկ էլ՝ կանայք... հենց այնպես,— Մնացի լեզուն կապվեց, երբ Վերանի հայացքն ընկավ քարայրի առաջ արածող ոչխարներին ու այծերին,— էս հոտն ո՞ւմն է:

— Ուրիշի չէ,— Մնացը ասելու բան չգտավ:

— Ձե՞րն է, թե՞ միայն քոնը:

— Բոլորինն է:

— Բա ասում եք՝ հավերի կերը շուտ է վերջանում: Հիմա ակտ կկազմեմ, բոլորիդ բմբլահան կանեմ:

— Մոշկուտից դուրս չեն գալիս, չոր խոտ են արածում,— Մնացը ուզեց պաշտպանվել,— հավերի կերը անարատ է մնում, ջանիս արևը:

Այդ ժամանակ Սաթոյի մատաղացու գառը, որ այլևս գառ չէր, չգիտեմ թռչնանոցի որ անկյունից դուրս եկավ:

— Սա ի՞նչ է,— Վերանը կատաղեց,— ես ձեզ դատի կտամ: Կոլխոզի հաշվին սեփական ոչխարներ եք գիրացնում: Ամենքդ քանի՞սն ունեք,— խստորեն հարցրեց:

— Շատ չի... մի քանիսը:

— Էս կոմսոմոլն ի՞նչ գործ ունի էստեղ,— առաջը մի ժամ է կանգնած եմ, նոր նկատեց,— սա է՞լ ոչխար ունի:

— Չէ, չունեմ,— պատասխանեցի:

— Բա ի՞նչ ես անում էստեղ:

— Հավարած եմ:

— Հավարած, չէ՛ մի տավարած,— ծաղրանքով երկարացրեց բառերը,— կամ հորդ նման ոչխարած: Գրագետ աղջիկ ես, ասա՝ թռչնապահ:

— Դրա արևին մեռնեմ, մեզ լավ է օգնում,— Մնացը կամեցավ շողոքորթելով խոսակցությունը շեղել և սկսեց իմ գովքն անել:

— Դու ինստիտուտ չէի՞ր ընդունվել,— Վերանը նրան ընդհատեց՝ դառնալով ինձ:

— Հա՛,— մեքենայաբար պատասխանեցի և նորից խոնարհեցի գլուխս:

— Բա ինչո՞ւ թողեցիր:

— Եսիմ:

— Բագրատի ցեղից սովորող չի դուրս գալ,— անփույթ շպրտեց,— ձերը ոչխարներն ու հավերն են, լավ էլ տեղդ գտել ես:

Այս անգամ զայրանում եմ Մնացի վրա, որ ուշադրությունը իր անասուններից շեղելու համար իմ կողմը դարձրեց: Սատկեն քո ոչխարները, Մնաց քեռի, հազիվ խաղաղվել էի, որտեղի՞ց հայտնվեց այս Վերան անասնաբույժը, և ինչո՞վ է տարբերվում ուրիշներից: Դեռ տեղ չհասած, իբր գործով է եկել, մեր հոգսերից հարցուփորձ անելու փոխարեն Բագրատի ցեղն է հիշում: Բագրատի ցեղին դեռ լավ չգիտես, կապրես՝ կտեսնես:

— Հավերը ձվակտրվել են, լավ չեք պահում,— Վերանը բներն է ստուգում:

— Սեզոնը չի,— հանգիստ պատասխանում է Մնացը,— գարունը բացվի, կածեն:

— Հավերը պետք է ամբողջ տարին ձու ածեն:

— Նորություն եմ լսում:

— Դա քեզ համար է նորություն: Փորձով ապացուցված է:

— Կարող է պատահի... Բաղդադում էլ շատ խուրմա կա, մե՞զ ինչ:

— Խոսքը սար ու ձոր մի գցի: Կերը ձեր անասուններին եք տալիս,— նորից է բորբոքվում անասնաբույժը:

Մնացը ավելի է փոքրացել, մի բուռ դարձել, շարունակում է շողոքորթել:

— Մրսում ես, ներս գնանք,— առաջարկեց նա Վերանին և թևից բռնած կացարան առաջնորդեց:

# Ես հավարած եմ

*ԱՇԽԵՆ ԱԲԱՋՅԱՆ*

Ես ներս չմտա: Դեղնուկի հետ սկսեցի պտտվել թռչնանոցի շուրջը: Դեղնուկը ագռավների ետևից վազեց, իսկ ես քար շպրտեցի, չնայած ագռավները հավերին վնաս չէին տալիս, բայց նրանց հավասար օգտվում էին շաղ տված կերից: Վախեցա, որ անասնաբույժ Վերանը դրա համար էլ կզայրանա, նորից կասի՝ իսկական տեղդ գտել ես, հայրդ ոչխարած, դու՝ հավարած:

Սակայն Վերանն այլևս չի նկատում ինձ, որովհետև հենց կացարանից դուրս է գալիս, Մնացի ոչխարներն ու Սաթոյի մատաղացու գառն են աչքով ընկնում.

— Մի քիչ հեռու՛ պահեցեք էս անտերները,— խորհուրդ է տալիս:

Սաթոն նեղացած շպրտում է.

— Մատաղացու գառան վրա չեն խոսի, անտեր չեն ասի:

— Ներողություն, տիկի՛ն Սաթո: Ե՛ս էլ եմ մեղավոր, ձեր վարիչ Աղասի՛ն էլ, որ նկատում ենք ձեր արարքները ու աչք ենք փակում: Մյուս անգամ երբ գամ, այստեղ ոչ մի անասուն չտեսնեմ: Հիմա հասկացա՞ք, թե՞ մեկ էլ կրկնեմ:

— Հասկացանք, Վերա՛ն ջան,— Մնացն ուզում է նրանից մի կերպ պրծնել և թևից բռնած դեպի «Բելոռուսն» է տանում, որին Գրիշն արդեն գործի էր գցել:

Վերանին ճամփու դնելուց հետո Մնացը դառնում է Սաթոյին.

— Ինչու՞ ես իզուր տեղ խոսում, մինչև մեկ էլ նա բարեհաճի գալ, արդեն ամառ կլինի, ոչխարները ցաքուտներում հանգիստ արածելիս կլինեն: Վերանը հո հանդե՞րը չի ընկնելու տեսնի մեր անասունները որտեղ են: Որ ասում եմ՝ խելք չունե՛ս:

— Քո խելքը աշխարհով մեկ է եղել, պրոֆեսո՞ր Մնացական:

— Տեսա՞ր, Վերանին ոնց խաբեցի,— շեղ աչքերը շողացրեց Մնացը,— նա՝ գրագետ ղեկավար, ես՝ անգրագետ հավարած, խոսքի տակ չմնացի, մեկին տասը պատասխանեցի:

— Գլուխդ քարով տվիր: Լեզուդ պապանձվել էր, վախից չորացել էիր:

Մնացը Սաթոյի ուշադրությունը Վարսենիկի լիքը գոգնոցի վրա հրավիրեց.

— Խելքից ես խոսում, տես, ո՞վ է խելքովը: Էսօր մի բարձր բմբուլ հավաքեց: Դու՛ էլ կասես՝ կնիկ եմ…

Ձյունը սկսեց միանգամից տեղալ, շարունակվեց գիշերն ու հաջորդ օրերին էլ: Ավանակները դժվարությամբ էին քայլում, իսկ Սաթոն ու Վարսենիկն իրենց ոչխարներին այլևս թռչնանոց չբերեցին, բայց երեկոյան տուն դառնալիս փոքրիկ խուրջիններն պարունակությունն ավելի շատացրին:

Մնացը գանգատվում էր գիշերային գազանների ոռնոցներից, ասում էր, որ աչք չի փակում, վախենում է մի օր էլ ֆերմայից ոչինչ չմնա:

— Աչքիդ է երևում,— ծաղրանքով պատասխանում էր Սաթոն,— քառասուն տարի է էս ֆերման էս ձորում հանգիստ մնացել է, հիմա քեզ տեսավ, գազաններով լցվե՞ց:

—Մնաց քեռի,— առաջարկեցի,— հրացանը վերցրու, գիշերները մթան մեջ կրակիր: Գազանները հրացանի ձայնից ահաբեկվում են:

—Լավ ես ասում, Արուս ջան,— քաջալերեց առաջարկությունս,— բայց լավ կլինի, ցերեկները հրացանը վերցնես, էս կողմերում պտտվես, բալքի աղվես հանդիպի, վերջը տաս: Որ մեկին սպանես, մյուսները կփախչեն,— մի փոքր դադարից հետո նորից է ինձ դիմում,— լավ կլինի, որ հենց հիմա դուրս գաս:

Վերցնում եմ հրացանն ու Դեղնու-

կին, և խոր ձյան միջով, մեծ-մեծ լո-քերով ծորից դուրս գալիս, հասնում հարթավայր, թփուտներն ու քարաժայ-ռերը: Ձյան վրա յիքը թարմ ոտնա-հետքեր են: Նապաստակներ են ան-ցել ոստոստալով, երևի աղվեսներ ու էլի շատ կենդանիներ, հետքերը խառնվում են, խաչվում, շեղվում, ան-հետանում, կրկին հայտնվում:

— Դեղնու՛կ, տեսնու՞մ ես, ի՜նչ գե-ղեցիկ նախշեր են:

Դեղնուկը հոտոտելով հետքերի վրա է ընկնում, բայց չի կարողանում գը-լուխ հանել, թառանչներ է արձակում, վազվզում, թաղվում հաճելի փափկու-թյան մեջ: Քամին մրսած կոկորդով սուլում է ականջիս տակ, որի մեջ թա-խիծ կա, տխրություն, անիմանալի կարոտ: Իմ հետքերն եմ խառնում այս բազում հետքերին ու ամեն քայլա-փոխի կարոտի նոր հրդեհ է բռնկվում կրծքիս տակ: Տասը տարիների դպրո-ցական աղմուկը քամու սուլոցների հետ ինձ այցի է գալիս, հողմապտույ-տի մեջ առնում ու աչքերիս առջև պատկերներ գծում՝ մեկը մյուսից հու-զիչ, մեկը մյուսից գունավոր: Զարմա-նում եմ, թե ինչպես եմ ապրում ա-ռանց այդ աղմուկների, առանց այդ գույների ու ժպիտների:

Հիմա քայլում եմ իմ այս նոր աշ-խարհով որպես նրա տեր, նրա որդին: Ունկնդրում եմ թփուտներում կեր որո-նող թռչունների մրսած ծլվլոցները, ո-րոնք հուսախաբ թփից թուփ են թռչում՝ ավելի տաքնապալից հնչեցնելով ծլվը-լոցները: Ինձ նման նրանք էլ բնության ազատ որդիներն են, ուր կամենան կգնան, ինչ կամենան, կտեսնեն: Բայց քիչ հետո խղճում եմ, որ նրանք ապ-րում են միայն իրենց օրվա սննդի մա-սին մտածելով, չեն զգում այս գեղեց-կությունը, որը հարստանում է իրենց տագնապահար կանչերով, մանր, ցըր-տից դողացող թևիկներով ու ոտքերով, իրենց չար ու բարի հայացքներով:

— Դեղնու՛կ, ես ու դու այստեղ ա-մենահզորն ենք, ուզենանք հրացանը կբարձրացնենք ու կկրակենք: Բայց չենք սպանի, միայն կվախեցնենք ու կզվարճանանք: Չէ՛, ես ու դու դաժան չենք, ոչ ոքի չենք էլ վախեցնի, եթե նույնիսկ Մնացի ասած աղվեսները մեզ վրա տան:

Գնում եմ, որքան աչքս կտրում է: Ուզում եմ գնա՜լ, գնա՜լ, հասնել հորի-զոնը երիզող բլուրներին, ինչպես մի ժամանակ ուզում էի ուրուրների ըն-կերը դառնալ ու լողալ երկնքի ան-սահմանության մեջ, ուրուրներին բա-րության դասեր տալ, հաշտեցնել մյուս թևավորների հետ:

Մամիի խիտ թփերի մոտ կանգ եմ առնում, շունչ քաշում: Աչքս ընկնում է չորացած ճյուղերին, որոնց վրա աշ-նանային չորացած պտուղներ կան: Հրացանը խրում եմ ձյան մեջ, որ ինձ չխանգարի և սկսում եմ պտուղներ

Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ



հավաքել: Վերարկու չեմ հագնում: Սպորտային բրդե տաբատն ու բազ-մաթիվ գրպաններով հաստ բաճկոնը ավելի հարմար են: Հիմա այդ բազմա-թիվ գրպանները մամիի չորացած պը-տուղներով եմ լցնում՝ մտքերիս մեջ սուզված, ինքնամոռաց: Դեղնուկը հա-չում է ոչ սովորականի նման, պտըտ-վում թփուտի շուրջը, հետո ինձ քաշ-քըշում: Ետ եմ նայում, նա նորից թփուտն է վազում: Ես տեսնում եմ վա-խեցած նապաստակին, որ պատըս-պարվել է արմատների արանքում ու ճաքած շուրթերով վերջին պատառն է ծամում: Նայում եմ հիացած, ուզում եմ գուրգուրել, սառած տոտիկները ափերիս մեջ տաքացնել ու քնքուշ խոսքեր ասել:

— Արի՛,— կանչում եմ,— արի ինձ մոտ:

Բայց նապաստակը չի նայում իմ հոր-դորներին, Դեղնուկի կողքով ծլկում է ու լանջն ի վեր վազում:



— Դեղնու՜կ, Դեղնու՜կ... — գոռում եմ նապաստակի ետևից վազող շանը, սակայն Դեղնուկը շարունակում է հալածել, մինչև երկուսն էլ անհետանում են իմ տեսողությունից: Համոզված եմ, որ Դեղնուկը նապաստակին չի հասնի և իրար չեն վնասի:

Քամին ձյունափոշին լցնում է աչքերս, կոկորդս և ինձ շնչահեղձ անում: Պտտվում եմ քամու հետ, ասես խաղում հետը: Այդպես խաղալով, ընկնելով, բարձրանալով հասնում եմ քարաբլուրը, ուր անհետացան Դեղնուկն ու նապաստակը:

Հանկարծ լսում եմ Դեղնուկի ողբաձայն կլանչոցը: Վազում եմ ու ի՞նչ եմ տեսնում. աղվեսը ատամներով ամուր բռնել է Դեղնուկի սուր ականջից ու իրեն է քաշում: Շունը թպրտում է՝ շրջաններ գծելով ձյան վրա և աշխատում ականջը ազատել: Բնազդաբար հրացանը իջեցնում եմ ուսիցս և հինգ քայլի վրա պառկում, նշան բռնում: Ես տեսնում եմ աղվեսի ընկնելը, Դեղնուկի փախչելը...

Սպանված աղվեսին քարշ եմ տալիս դեպի թռչնանոց:

— Երեկ ուրուր, այսօր աղվես, վաղը գայլ կամ արջ... Չէ՛, այլևս հրացան չեմ առնի ձեռքս և այսքան շատ չեմ հեռանա թռչնանոցից: Նրանք էլ են ծնվել, որ ապրեն... Ես քեզ խղճացի, Դեղնու՛կ...

Դեղնուկի ականջից արյուն է կաթում: Սիրտս մղկտում է, տագնապում եմ՝ աղվեսի կծածն ասում են՝ թունավոր է լինում, Դեղնուկս չսատկի՞...

Վարսենիկը բակում էր և առաջինն է նկատում սպանածս աղվեսին:

— Ժողովուրդ, դուրս եկեք,— այնպես է «ժողովուրդ» ասում, կարծես հազարներ են, ոչ թե մի շիլ Մնաց ու մի սև Սաթո: «Ժողովուրդը» դուրս է գալիս:

— Պա՛հ, արևիդ մեռնեմ,— Մնացը հիացմունքով ձեռքերը թափահարում է, վերցնում աղվեսին,— որ ասում եմ՝ մեր մեջի ոչ թե տղամարդը, այլ իգիթը դու ես: Էգուց էլ արջ ու գել կըսպանես, գիտեմ:

— Դեղնուկի ականջը, տե՛ս, Մնաց քեռի, ի՞նչ անենք:

— Ոչ մի բան: Ինքն իրեն կառողջանա: Մարդ չի, որ նվնվա ու շուտ տանենք բժշկի, դեղ ու դարման անենք:

Մնացը արագությամբ աղվեսին մաշկում է, միսը իր շների առաջը նետում, մորթուն աղ ցանում, գցում թռչնանոցի տանիքը:

Հոգուս պարուրած դառնությունը չի անցնում ամբողջ օրը: Ի՞նչ աղջկա գործ է որսորդությունը: Ձեռագործի փոխարեն հրացանն եմ առնում ձեռքս, թե ինչ է հավերին պաշտպանում եմ աղվեսներից ու բազեներից: Սատկեն բոլոր հավերն ու գազանները, պրծնեն իրարից, մենք էլ իրենցից: Աշխարհի ամեն անցուդարձից անտեղյակ եմ: Ոչ թերթ եմ կարդում, ոչ ռադիո լսում: Աշխարհն ինձնից է խռովել, ես՝ աշխարհից: Նոր տարին էլ այս մենաստանում նշեցինք: Մնացն ու կանայք առավոտյան օղի խմեցին, կեսօրին՝ գինի:

*(Շարունակելի)*



## ԿԱՐԴԱ ԱՅՍ ԳԻՐՔԸ

# ԼԱՌ ՇԵ — «ՀԻՇՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԿԱՏՎԱՔԱՂԱՔԻՑ»
# ՖՐԵԴԵՐԻԿ ԲՐԱՈՒՆ, ՈՒԻԼՅԱՄ ԹԵՆ — «ԱՍՏՂԱՅԻՆ ԿԱՐՈՒՍԵԼ»

Երբ 1957 թվականին արձակվեց երկրի առաջին արհեստական արբանյակը, իսկ մի քանի տարի անց տեղի ունեցավ առաջին տիեզերագնացի՝ Յուրի Գագարինի թռիչքը, շատերին թվաց, թե գիտական ֆանտաստիկայի օրերը հաշըվված են։ Այդ տպավորությունն ավելի խորացավ, երբ մարդը ոտք դրեց Լուսնի վրա, իսկ մարդու ստեղծած կայանները սկսեցին հետազոտել Մարսի ու Վեներայի մակերևույթները։ Սակայն տպավորությունը խաբուսիկ էր։

Գիտության ու գրականության ճանապարհները ինչքան էլ խաչաձևվեն, երբեք չեն համընկնում ու, առավել ևս, չեն կարող փոխարինել միմյանց։ Գիտությունը մնում է գիտություն, իսկ ֆանտաստիկան այն արվեստն է, որտեղ իրենց արտահայտությունն են գտնում մարդկային երևակայությունն ու երազանքը, տագնապները ու հույսերը։ Եվ, վերջապես, ինչպիսի հեռավոր ժամանակներ ու արտասովոր աշխարհներ էլ որ գնա գիտական ֆանտաստիկան, նրա հիմնական խնդիրը միշտ էլ եղել ու մնում է մեզ շրջապատող իրականության ընկալումն ու իմաստավորումը։ Դրա լավագույն ապացույցն են այսօր ձեր ուշադրությանը ներկայացվող երկու գրքերը։

«Աստղային կարուսել» ժողովածուն կազմված է ամերիկյան երկու ֆանտաստների՝ Ֆրեդերիկ Բրաունի և Ուիլյամ Թենի պատմվածքներից։ Ժողովածուի համար բնորոշ է Բրաունի «Մի քիչ կանաչ» պատմվածքը։ Այս պատմվածքի հերոսի տիեզերանավը կործանվել է ամենաանմարդաբնակ մոլորակում, որտեղ ամեն գույն կա, բացի կանաչից, իսկ կանաչը նրա հայրենի Երկիր մոլորակի գույնն է։ Բացարձակ մենակության մեջ այդ մարդը տարիներ շարունակ կարողացել է ապրել միայն շնորհիվ այն բանի, որ չի կորցրել երբևիցե նորից Երկիր վերադառնալու հույսը։ Եվ ահա կատարվում է գրեթե անհնարինը։ Տիեզերական անհունում կորած այդ մոլորակի վրա նոր տիեզերանավ է վայրէջք կատարում։ Մարդը փրկված է։ Բայց երբ նա իմանում է, որ Երկիր մոլորակը կործանվել է և մարդիկ տեղափոխվել են Մարս, հրաժարվում է փրկությունից։ Գերադասում է կյանքի վերջին տարիներն էլ անցկացնել մենության մեջ, բայց իր մեջ դարձյալ ունենալ հայրենի Երկիր մոլորակի՝ կանաչ մոլորակի պատկերը։ Ի՞նչ խոսք, մենք այդքան հոռետեսորեն չենք տրամադրված մեր մոլորակի ապագայի նկատմամբ, բայց պետք է հասկանանք Բրաունին. նա ապրում է այն

հասարակության մեջ, որտեղ մարդը վստահություն չունի ապագայի նկատմամբ: Նույն կապիտալիստական հասարակության մեջ տիրող խորթացման հետեվանք է Թենի «Պատիժ կանխավ» հոյակապ պատմվածքը: Այս պատմ վածքները գիտաֆանտաստիկ լինելով հանդերձ ամերիկյան կյանքի մասին ոչ պակաս հստակ պատկերացում են տալիս, քան կըտար որևէ վավերագրական գիրք: Պատմվածքները ճիշտ հասկանալուն ու ընկալելուն ձեզ կօգնի նաև ժողովածուի ընդարձակ առաջաբանը:

Դառն է ու տխուր նաև չին գրող Լաո Շեի «Հիշողություններ կատվաքաղաքից» ժողովածուի համանուն վիպակի ֆանտաստիկան:

Վիպակի գործողությունները կատարվում են Մարսում, ավելի ճիշտ Մարսի երկրներից մեկում, որտեղ գոյություն ունի... կատուների քաղաքակրթություն: Բայց դա մեզ զարմացնում է միայն վիպակի առաջին էջերում, իսկ հետո բանական կատուները թըվում են ամենասովորական ու բնական մի բան, որովհետև արտասովոր է այն ամենը, ինչը կատարվում է այդ երկրում, Դա մի երկիր է, որտեղ թագավորում են խավարն ու տգիտությունը, ծուլությունն ու դատարկախոսությունը: Մի երկիր, որտեղ գիտնականները ոչինչ չեն հայտնագործում, գրողները ոչինչ չեն գրում, բանվորները ոչինչ չեն ըստեղծում: Մի երկիր, որտեղ երեխաները դպրոց հաճախելու առաջին իսկ







օրը ստանում են... համալսարանն ավարտելու դիպլոմ: Ի՞նչ է սպասում նման երկրին ու ժողովրդին...

Լաո Շեն 20-րդ դարի չին խոշորագույն գրողներից է: Նրա ստեղծագործությունները թարգմանվել են աշխարհի բազմաթիվ ժողովուրդների լեզուներով: Այս վիպակը նա գրել է 1932 թվականին, որը այսօր՝ հիսուն տարի անց էլ, չի կորցրել իր թարմությունը: Մեծ գրողին հատուկ խորաթափանցությամբ նա փաստորեն կանխատեսել է այն իրադարձությունները, որոնք Չինաստանում տեղ գտան չարաբաստիկ կուլտուրական հեղափոխության օրերին: Եվ որքան ցավալի է, նա փաստորեն կանխատեսել է նաև իր ճակատագիրը. վիպակում նկարագրված է մի մահ, որը շատ նըման է իր՝ Լաո Շեի վախճանին. չին մեծ գըրողը 1966 թվականին դարձավ գազազած խունվեյբինների զոհը:

Այս երկու գրքերը, որոնք լույս է ընծայել «Սովետական գրող» հրատարակչությունը, ձեզ գեղագիտական բավականություն պատճառելուց բացի, շատ բանով կօգնեն ճիշտ հասկանալու և գնահատելու այն բարդըն ու հակասականը, որ այսօր տեղի են ունենում աշխարհում:

Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ



ՎԱՐԴԱՆ ԽԱՉՈՅԱՆ




## 4. Սահակ վարդապետի որոնումները

«Բույսերի արմատներն իրենցով անայնորեն չեն սնում ամենացանկալի Արարատյան դաշտն, այլև ծնում են կարմրատեսիլ գույների զարդն որդանակերպն, ընծայելով ընչասերներին շահ և շենղություն»:

ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ V դար

Կաթողիկոսը Սահակ վարդապետին վերստին հիշեցրել և պարտավորեցրել էր ինչ գնով էլ լինի փնտրել և գտնել կարմիր որդից ներկ հանելու գաղտնիքը: Վարդապետը հանձն էր առել և ուխտել մոռացության անդունդից ետ կորզել այդ կորած գանձը: Իր ապագա փորձերի համար նա հավաքել էր տարբեր անոթներ, սրվակներ, հավանգներ, զանազան նյութեր, իր խցում տեղավորել էր հավելյալ սեղան, որի վրա դասավորել էր նաև մագաղաթյա գրքեր: Մոմի լույսի տակ այս ամենի խոշորացած ստվերները արտացոլվում էին պատերի վրա, խուցին տալով ամեն ինչ ոսկի դարձնելու գաղտնիքը փնտրող արաբ ալքիմիկոսի գործատան տեսք:

Սահակը քաջ գիտեր, որ դժվար բեռ է վերցրել իր տկար ուսերին: Բայց իրեն էլ էր գրավում այդ գործը. երազում էր գրքեր ծաղկազարդել իր նախնիների պես... Բայց չկար իր ձեռքի տակ հայկական կարմիրը, որը նախնիների արվեստը դարձնում էր անզուգական:

Նա ակնածանքով սեղանից վերցրեց գրքերից մեկը, ձեռքով սրբեց կամ ավելի ճիշտ շոյեց կազմը և սկսեց թերթել: Թերթում և խորհում էր: Քանի՜-քանի մարդ է մասնակցել նրա ստեղծմանը: Արոտապահն ու հովիվը, հորթարածը, մսագործը, որ մորթել և քերթել է հորթերի կաշին, կաշեգործը, որ մշակել է և պատրաստել մագաղաթը, ներկարարները, որ արարել են այդ անզուգական ներկերը, կազմարարները, մետաղագործները, ոսկերիչները, որոնք գրքերի կազմն են

պատրաստել, ծաղկարարները և ուրիշ-ուրիշ քանի քանիսը:

Նա դանդաղ փակեց ավետարանը և նորից խնամքով դրեց սեղանին: Գիշերվա լռության և խուցի կիսախավարում, մոմի լույսի տակ, Սահակի մտքում սաղմնավորվում էր հետագա անելիքների ծրագիրը: Նախ հարկավոր էր գնալ դաշտերը, փնտրել և գտնել կարմիր որդը:

## 5. Արարատյան որդը

«Այրարատի երկրամասն ունի լեռներ, գետեր, և պիտանի դաշտավայրեր: Ունի օրսի կենդանիներ, թռչուններ և ամեն տեսակի բարիքներ: Այնտեղ է Գայլատու ծովակը: Ունի սիզաքերյալ արմատի որդ, որն օգտագործում են իբրև կարմիր գույնի զարդ»:

ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑԻ VII դար

Սահակ վարդապետը Խորենացու աշխատությունում կարդացել էր որդան կարմիրը սնուցող հողերի մասին: Որոշեց Սուրմալուից մինչև Նախիջևան քննել սիզաքեր հողերը: Աշխատանքներն սկսեց օգոստոս ամսին: Արթնանում էր վաղ առավոտյան զովին, քայլում էր Արարատյան դաշտավայրով, գավազանով տնտղում հանդիպած թփերը, ծոցից հանում էր խոշորացույցը և նայում ուշագրավ միջատներին: Վաղ առավոտյան Մասիսի ստորոտը քողարկված էր լինում մշուշով, իսկ գագաթը լուսավորված ծագող արևի ճառագայթներով, և թըվում էր, թե նա մի հսկա, գետնից կըտրված շողշողացող սեղան էր՝ ծածկված անարատ, ադամանդազարդ սփռոցով: Սիսի գագաթն արդեն ազատվել էր ձյունից:

Չորս կողմը, ինչքան որ մարդու աչքը կտրում էր, տարածվում էին աղուտները: Դաշտավայրը կիսաանապատ էր, ուր միայն տեղ-տեղ սեզերի թփուտներ կային, չորս կողմը չոր էր, անկյանք:

Սահակը սթափվեց մտքերից և նայեց մոտակա սեզերի կողմը: Նրա առաջ, թփերի արանքում կարծես ծաղկի փնջեր ու առանձին-առանձին մանուշակներ էին թափված, գետինը դարձել էր գունագեղ հայկական գորգ, որի զարդանկարները շարունակ փոփոխվում էին: Նա մտածեց, որ այդ տեսիլք է, ապա կռացավ գետնին, նայեց ուշադիր և հմայված ասաց.

— Փ՜առք քեզ աստված... գտա փնտրածս:

Հողի մակերեսին շարժվում են ձվաձև մեջքները ուռեցրած, մուգ բալի գույնի միջատները, իսկ օդում թռչում էին թևավոր, գիսավոր աստղեր հիշեցնող, առաջիններից տարբերվող ուրիշները, որոնք իջնում էին և մոտենում գետնի վրա նստածներին, կպչում նրանց, և մի քանի ակնթարթ հետո, նորից օդ բարձրանում: Սահակը գետնից բարձրացրեց, խոշոր, արնագույն որդը, տեղավորեց իր ցուցամատի եղունգին, որը համարյա թե ծածկեց եղունգը, ծոցից հանեց խոշորացնող ապակին և սկսեց ուշի ուշով զննել: Ապակու տակ նա տեսավ միջատի պարզ և փոքրիկ աչքերը, հատվածավորված բեղիկները և ոչ երկար երեք զույգ վերջավորությունները: Նա միջատը զգուշությամբ դրեց հողին, ապա որսաց թռչողներից մեկին, որը համարյա կիսով չափ փոքր էր առաջինից. խոշորացույցի ներքո երևացին նրա խոշոր աչքերը, երկար բեղիկները, առջևի մեծ, եզրերին վարդագույն բըծերով թևերը և հետին՝ չզարգացած թևիկները: Միջատը ուներ երկար ոտիկներ, իսկ փորի վերջից սկսվում էր մոմանման թելիկների փունջը: Վարդապետը հիացմունքով տարուբերեց գլուխը և բաց թողեց միջատը:

Կիսաանապատն այնքան էլ անկյանք չէր, որքան թվում էր առաջին հայացքից: Ահա մի խումբ մրջյուններ քաշքշում էին իրենցից շատ մեծ որդը, որը սակայն տեղից չէր շարժվում, քանի որ մրջյունները նրան ձգում էին տարբեր կողմեր: Քիչ հեռու մի ուրիշ մրջյուն նույնը կատարում էր մենակ: Նա ամբողջովին լարվել էր և հենվելով ետին ոտքերին, քաշում էր միջատը. չնայած վերջինս անշարժ էր, բայց նա քաշում էր առանց հուսահատվելու: Վերջապես որդը պոկվեց տեղից և սկսեց կամաց քարշ գալ



մրջյունի կողմը, որն էլ մրջնային համառությամբ նրան տարավ դեպի իր բույնը: Վարդապետը մտածեց, թե արդյո՞ք դրանով նախախնամությունը չի հասկացնում իրեն, որ բեռդ ինչքան էլ ծանր ու դժվարին լինի, համառ և անխոնջ ջանքերով, մրջյունի նման, պետք է տեղից շարժես:

Վարդապետը դիտեց մրջնային ուղին, որով նրանք կրում էին որդերին, ապա նկատեց, որ թռչունները նույնպես կտցում են նրանց, իսկ մի վախկոտ դաշտամուկ, որը հասցրել էր բռնել որդին, նկատելով մարդուն՝ շտապ թաքնվեց թփերի արանքում: Արևն ավելի ուժեղ էր տաքացնում գետինը, որդերը սկսեցին շարժվել և արագ անհետանալ հողի ճեղքերում, սեզի արմատների տակ: Շուտով նրանք չքացան այնպես, որ ասես չէին էլ եղել: Ուրեմն նրանք հողի երես են ելնում վաղ առավոտյան, երբ արևը դեռ թույլ է, դա է պատճառը, որ առավոտյան աղուտներում արածող անասունների դունչը ներկվում է թանկագին որդան կարմիրով:

Հաջորդ առավոտը վարդապետը դիմեց Արաքսի եղեգնուտները: Այնտեղ էլ գտավ իր փնտրածը և ուրախ սկսեց հավաքել: Սկզբում ժողովում էր հատիկ-հատիկ, մեծ զգուշությամբ, վախենալով վնասել փափուկ, անպաշտպան միջատներին, ապա սկըսեց վերցնել մի քանի հատ միասին:

Հետագա օրերին, նա այդպես քայլելով հասավ մինչև Խոր Վիրապ և Նախիջևանի սահմաններին: Հանգըստացավ Խոր Վիրապի վանքում, ապա վերցնելով ապագա ուսումնասիրությունների համար հավաքած միջատները, վերադարձավ Էջմիածին, և Վեհափառին զեկուցեց իր դիտողությունների մասին.

— Սահա՛կ, որդի՛ս, դու շատ բան ես պարզել, բայց գլխավորը անհայտ է, աշխատիր դրանցից նե՛րկը դուրս կորզել...

Կաթողիկոսի թույլտվությամբ և օգնությամբ Սահակ վարդապետը վանքի մոտ ջերմատուն կառուցեց, հողն էլ բերել էին աղուտներից, որտեղ փարթամ աճում էր որդան խոտ-սեզը:

Ջերմոցում նա սկսեց բուծել կարմիր որդերին և իր ուսումնասիրությունները դաշտավայրից փոխադրեց Վաղարշապատ: Այդ քայլի շնորհիվ տընտեսված էր անհագին ժամանակ և ուժ, որոնք ի սպաս դրեց իր նպատակին: Երբ անհրաժեշտ քանակով որդեր կուտակվեցին, Սահակը սկսեց նըրանց մեռցնելու փորձերը: Կաթողիկոսը նրան տեղեկացրեց, թե հին ձեռագրերում գրված է, որ որդը մեռցընում են կաղնի ծառի փայտից ստացած մոխրի օգնությամբ: Նա այդպես էլ արեց: Ապա նրանց վրա լցրեց եռացող քացախ, իսկույն որդերից անջատված յուղը կանգնեց կաթսայի երեսին:

Վարդապետը մատը թաթախեց կաթսայի մեջ և սկսեց զննել այդ յուղը:

Յուղի մեջ կարծես մոմ էլ կա:

Սահակը կաթսայից հանեց մեռցըրած որդերը և փորձեց չորացնել: Յուղալպատ միջատները դժվարությամբ էին չորանում: Նա փորձեց մի մասը չորացնել թոնրում, միջատները ոչ թե չորացան, այլ խորովվեցին: Նրանցից նորից յուղ դուրս եկավ, իսկ իրենք կուչ եկան և անպետքացան: Նա մի բուռ որդերի վրա փոշիացած կիր ցանեց, որից նրանք այրվեցին և նույնպես անպետքացան: Երբ փորձեց գաջը՝ որդերը կպան միմյանց, աղյուսի պես ամրացան և դարձյալ պիտանի չէին: Սահակը փորձեց նրանց վրա լցնել ցորենի և կորեկի ալյուր, այդ դեպքում էլ ստացավ ոչնչի չնմանվող մածուցիկ խառնուրդ: Այդպես նա կատարեց անթիվ փորձեր, բայց տաժանակիր աշխատանքը արդյունք չէր տալիս: Ոմանց լսելով, նա որդերը ամփոփեց կտավի մեջ և պահեց վառվող ծծմբի ժանտահոտ և դեղին ծխի վրա, նույնպես անարդյունք: Նրանք անպետքացան նաև գինու և աղաօքի մեջ: Չնայած անհաջողություններին, Սահակը գնալով հիանում էր այդ փոքրիկ միջատներով, որոնք մահանում էին այդքան դժվարությամբ և ավելի համառ պահպանում իրենց գաղտնիքը:

Միայն 1816 թվականին հաջողվեց որդերը թմրեցնել գինով, ապա նրանց հյութը քամել կտավով և չորացնել: Այդ եղանակով նա ստացավ ներկը, որը սկսեց օգտագործել ծաղկազարդման համար: Ստացված հումքը ուներ տարբեր երանգներ և անգամ պիտանի էր սուրբ քահանայապետի կնիքի համար: Նա հետագայում էլ շարունակեց որոնումները, կատարելագործեց իր գյուտը և այն պահեց գաղտնի, որպես իր ստեղծագործությունը, այլ ոչ թե իրեն հասած ավանդ: Վանքը դադարեց ներկ գնելուց, իսկ Սահակը արժանացավ կաթողիկոսի շնորհակալությանը և օրհնանքներին:

Հետագա աշխատանքները օգտավետ էին, նա արդեն ծաղկազարդում էր սեփական գույներով: Չնայած հասել էր նպատակին, բայց շարունակում էր որդերի ուսումնասիրությունը: Մի անգամ էլ կենդանի որդերը լցրեց ապակյա անոթի մեջ, որի բերանը խըցանեց, իսկ երկու ամսից հետո այն բանալով տեսավ, որ որդերը թմրել են, կարծես թե քուն են մտել, իրենց շուրջը առաջացնելով ծաղկի նման բորբոս, նա նկատեց, որ անոթում կան մանրահատիկ կարմրավուն ձվիկներ, որոնց մեծությունը կլիներ խաշխաշի հատիկի չափ: Հետագայում նա այդ ձվերից ստացավ որդեր:

Այժմ էլ զարմանք ու հիացմունք է պատճառում Սահակի փորձերի հետևողականությունը, նպատակասլացությունը և այն բարեխղճությունը, որը երբեք չլքեց վարդապետին:

(Շարունակելի)



Նկ. ՀՐԱՅՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 3 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1982



**Շապիկի 1-ին էջը՝ Ջավեն Բշտիկյանի։**

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ
Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.

Գեղ. խմբագիր՝
Ա. ԿԻԼԻԿՅԱՆ
Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 20.1.82 թ.։ Ստորագրված է տպագրության 16.8. 1982 թ.։ ՎՖ 05629։ Թուղթ օֆսեթ, $70\times100^{1}/_{16}$։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 8,9 պայմ. մամ., 8,1 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 65062։ Պատ. 75։ Գինը՝ 15 կ.։ ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. № 2։
Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.




Շախմատի ձիու քայլերով նկարի վերին ձախ վանդակից սկսած՝ փորձեք կարդալ մի հանրահայտ ասացվածք:

Նկար-առաջարկը՝ ՅՈՂԱԿ ԴԱՆԴԻԼՅԱՆԻ

## ՊԱՏԱՍԽԱՆ

«Պիոներ № 1 — Բառաշղթա-գաղտնագիր

1. Շիկոտան: 2. Նեոն: 3. Նավասարդ: 4. Դահուկ: 5. Կուշկա: 6. Աղավնի: 7. Իկար: 8. Ռոպե: 9. Երամ: 10. Մարտ: 11. Տանձ: 12. Ձյուն: 13. Նեղոս: 14. Սրինգ: 15. Գիքոր: 16. Ռե: 17. Եղևնի: 18. Իտալիա: 19. Անտարկտիդա: 20. Աշուն: 21. Նեմո: 22. Ոզնի: 23. Իրան: 24. Նավակ: 25. Կազբեկ: 26. Կեռնեխ: 27. Խորանարդ: 28. Դեկտեմբեր:

«ՇՆՈՐՀԱՎՈՐ ՁԵՐ ՆՈՐ ՏԱՐԻՆ, ԵՐԵԽԱՆԵՐ»:




Ամեն տարի, մարտ ամսին, մեր երկրի բոլոր հանրապետություններում, ՀԱՄԽ-ի, ՀԼԿԵՄ ԿԿ-ի, գրողների միության, կուլտուրայի և լուսավորության մինիստրությունների ու Հրատպետկոմի կողմից կազմակերպվում է մանկական գրքի շաբաթ:

1970 թվից սկսած նաև մանկական գրքի համամիութենական շաբաթ է անցկացվում յուրաքանչյուր տարի Սովետական Միության հանրապետություններից մեկում՝ ըստ սահմանադրական հերթականության:

Այս տարի մանկական գրքի համամիութենական շաբաթի անցկացման վայրը Երևանն է որին մասնակցելու համար հարյուրավոր հյուրեր՝ ճանաչված մանկական գրողներ, դպրոցականներ, ժամանեցին Մոսկվայից, Լենինգրադից և բոլո՛ր, բոլո՛ր հանրապետություններից: